Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ

1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

●

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

ԵՐԵՎԱՆ

●

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## Բովանդակություն

**Խմբագրության հասցեն՝**
**375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2**

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողների՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1990 թվականի ապրիլի 6-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենում, որը քննարկեց կազմակերպական հարց:

Պլենումը բավարարեց Ս. Գ. Հարությունյանի խնդրանքը՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարի և Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից իրեն ազատելու մասին և նրան շնորհակալություն հայտնեց հանրապետական կուսակցական կազմակերպություններում կատարած աշխատանքի համար:

Փակ (գաղտնի) քվեարկությամբ պլենումը Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընտրեց **Վ. Մ. Մովսիսյանին**, որն աշխատում էր որպես Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, Հայկական ԽՍՀ պետական ագրոարդյունաբերական կոմիտեի նախագահ:

Պլենումում ելույթ ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար Վ. Մ. Մովսիսյանը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր և ելույթ ունեցավ ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, Կենտկոմի քարտուղար Գ. Պ. Ռազումովսկին:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը:



## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար

# ՎԼԱԴԻՄԻՐ ՄԻՀՐԱՆԻ ՄՈՎՍԻՍՅԱՆ

Ծնվել է 1933 թվականի նոյեմբերի 12-ին Սպիտակի շրջանի Ծենավան գյուղում, գյուղացու ընտանիքում, հայ է: ԽՄԿԿ անդամ է 1961 թվականից: Կրթությունը բարձրագույն՝ 1958 թվականին գերազանցությամբ ավարտել է Երևանի անասնաբուժական-անասնաբուժական ինստիտուտը գիտական զոոտեխնիկի մասնագիտությամբ և 1969 թվականին՝ ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր բարձրագույն կուսակցական դպրոցը: 1973 թվականին պաշտպանել է դիսերտացիա, և նրան շնորհվել է գյուղատնտեսական գիտությունների թեկնածուի գիտական աստիճան:

Ինստիտուտն ավարտելուց հետո Վ. Մ. Մովսիսյանը որպես կրտսեր գիտաշխատող աշխատանքի է ուղարկվել Հայկական ԽՍՀ գյուղատնտեսության մինիստրության անասնաբուծության և անասնաբուժության գիտահետազոտական ինստիտուտի Կալինինոյի փորձարարական բազա: 1959 թվականից մինչև 1962 թվականը աշխատել է որպես Կալինինոյի շրջանի գլխավոր զոոտեխնիկ, 1962 թվականից մինչև 1965 թվականը՝ որպես Կիրովականի տերիտորիալ կոլտնտեսային-խորհտնտեսային վարչության, այնուհետև Ստեփանավանի շրջանի գյուղատնտեսության արտադրական վարչության գլխավոր զոոտեխնիկ, 1965—1967 թվականներին եղել է Կալինինոյի շրջանի գյուղատնտեսության արտադրական վարչության պետ: 1967 թվականից մինչև 1969 թվականը՝ ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր բարձրագույն կուսակցական դպրոցի ունկնդիր: Այդ դպրոցն ավարտելուց հետո Վ. Մ. Մովսիսյանը առաջ է քաշվել կուսակցական աշխատանքի՝ ընտրվել է Հայաստանի կոմկուսի Արտաշատի շրջկոմի քարտուղար, 1973—1974 թվականներին եղել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչի տեղակալ, 1974—1975 թվականներին՝ Ստեփանավանի կուսշրջկոմի առաջին քարտուղար, 1975 թվականից՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչ: 1978—1984 թվականներին եղել է Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ:

1984 թվականի հունվարից Վ. Մ. Մովսիսյանը աշխատում է որպես Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, իսկ 1985 թվականի դեկտեմբերից միաժամանակ նաև որպես հանրապետության պետական ագրոարդյունաբերական կոմիտեի նախագահ:

Վ. Մ. Մովսիսյանը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ է 1986 թվականի հունվարից, Հայաստանի կոմկուսի XXVI—XXVIII համագումարներում ընտրվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ: Հայկական ԽՍՀ 8—11-րդ գումարումների Գերագույն խորհրդի դեպուտատ է: Պարգևատրված է Աշխատանքային կարմիր դրոշի երկու շքանշանով, «Պատվո նշան» շքանշանով ու մեդալներով: 1988 թվականի փետրվարից մինչև հիմա գլխավորում է Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի և Մինիստրների խորհրդի գաղթականների գործերի հանրապետական հանձնաժողովը, 1990 թվականի հունվարից՝ արտակարգ իրադրության օպերատիվ շտաբը:

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆԻ ելույթը

### ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ, 1990 Թ. ԱՊՐԻԼԻ 6-ԻՆ

*Ընկերներ։*
*Խորապես զգացված եմ ինձ ցույց տրված վստահության համար։ Լիովին*
*հասկանում եմ պատասխանատվության այն բեռը, որը հանրապետության*
*համար բախտորոշ, ծանր այս օրերին դրվում է ինձ վրա։ Այսօր պահանջվում*
*է ժողովրդի և կուսակցության, հասարակական բոլոր կազմակերպությունների*
*ու շարժումների ջանքերի գերագույն համախմբում՝ դիմակայելու փորձու-*
*թյանը և հանրապետությունը դուրս բերելու ճգնաժամային իրավիճակից։*
*Ես հավատում եմ մեր կյանքի արմատական վերափոխումների տրամա-*
*բանական ընթացքին, դրա հետ մեծապես կապելով նաև մեր ժողովրդի վաղ-*
*վա օրը։ Խորապես համոզված եմ, որ միայն արմատապես վերափոխվելով,*
*ազգի գերագույն շահերի գիտակցությամբ համակվելով, Հայաստանի կոմկուսը*
*բարոյական իրավունք կունենա իր ուսերին վերցնելու պատմական պատաս-*
*խանատվությունը ժողովրդի բախտի համար։*
*Տագնապների և հույսերի ժամանակ. այսպես են բնութագրվում մեր ապ-*
*րած օրերը։ Մանավանդ՝ հայ ժողովրդի համար։*
*Սոցիալական մեծ հեղաբեկումներին զուգահեռ մեր տուն մտավ դժբախ-*
*տությունը՝ հազարավոր կորուստներով, ավերված քաղաքներով ու գյուղերով,*
*հարյուր հազարավոր անօթևան մարդկանցով ու բյուրավոր փախստականնե-*
*րով, մարդկային խեղված ճակատագրերով։ Մեր ազգային գոյության արնա-*
*ներկ պատմությունը մթագնվեց նոր եղեռնագործություններով։*
*Չափազանց դժվարին պայմաններում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի*
*բյուրոն, նրա առաջին քարտուղար Սուրեն Հարությունյանը մեծ ջանքեր*
*գործադրեցին լուծելու ժողովրդին հուզող հարցերը, կանխելու ճգնաժամի հե-*
*տագա խորացումը։*
*Այսօր առավել քան անհրաժեշտ են հստակ ու վճռական գործողություններ։*
*Մենք կանգնած ենք լինելիության երկվության առջև՝ կամ ազգային վե-*

րածնունդ, կամ տնտեսական փլուզման խորացում, գումարած նաև բարոյական անկում, որի ցավալի դրսևորումներն արդեն տեսանելի են։ Իրատես լինենք։ Ելքն այսօր միակն է. համախմբված, համերաշխ ու միաբան վերաշինել մեր տունը, համաժողովրդական զգացմունքների էներգիան ամրապնդել սթափ, կշռադատված ազգային ծրագրով, որը մեր ժողովրդին կապահովի ինքնավար, արժանապատիվ գոյավիճակ խորհրդային վերափոխվող ֆեդերացիայի կազմում։

Երեկվա օրվան ուղղված մոտեցումներն այլևս չեն օգնի։ Արժեքների վերագնահատումն այսօր ոչ թե սոսկ կարգախոս պետք է լինի, այլ դառնա գործ, դառնա քաղաքականություն, ազգային ծրագիր։

Այո, վերանայման անհրաժեշտություն ունեն ոչ միայն տակտիկական մոտեցումները, այլև շատ ստրատեգիական դիրքորոշումներ։

Դեմոկրատական մտածելակերպի և, մանավանդ, գործելակերպի հրամայական պահանջը արդեն համակել է ժողովրդին, կուսակցությանը։ Եվ մեզանից պահանջվում է ամենօրյա վարքագիծ ու գործ դարձնել այդ ազնիվ մղումը։

Մեզ պետք է նաև ձևավորել էապես նոր ժողովրդատնտեսական համալիր, ճշգրտել կապերի ու փոխհարաբերությունների բնույթը թե՛ միութենական հանրապետությունների և թե՛ արտասահմանի հետ։

Առջևում սպասվում են սոցիալ-տնտեսական լուրջ վերափոխումներ։ Վաղուց ժամանակն է մտածել ոչ թե գոյություն ունեցող հարաբերությունների պայմաններում ծրագրերի իրականացման մասին, այլ արմատապես կատարելագործել այդ հարաբերությունների բնույթը։ Իսկ դա անհնարին է առանց սեփականության նկատմամբ նորովի մոտեցման, առանց հողային արմատական ռեֆորմի, առանց հասարակական-տնտեսական կառուցվածքները կյանքի օբյեկտիվ պահանջներին համապատասխան վերաշինելու, առանց շուկայական հարաբերությունների հետևողական արմատավորման։

Մենք հաստատակամորեն գնալու ենք հանրապետության սուվերեն իրավունքների, նրա տնտեսական ինքնուրույնության ամրապնդման, ազատ ձեռներեցության քաղաքականությունը գործի վերածելու ճանապարհով։

Մեզանում ստեղծված իրավիճակը թելադրում է ազգային միասնության և համաձայնության էապես նոր որակ։ Մեր ժողովրդի պատմական ճակատագրի բերումով հայությունն այսօր ապրում է երեք գոյավիճակներով. Հայաստան և Արցախ, ներքին սփյուռք, արտաքին սփյուռք։ Ազգային միասնությունն այս երեք վտակների միահյուսումը պիտի լինի։ Մեր աշխարհասփյուռ վիճակը ազգի թուլության աղբյուրից պետք է վերածի նրա զորության աղբյուրի։ Իսկ դրան կարելի է հասնել, եթե ավելի օրգանական դառնան մեր կապերը և՛ ներքին, և՛ արտաքին սփյուռքի հետ։ Այսօր թերևս հասունացել է նաև համահայկական խորհրդաժողովի հրավիրման անհրաժեշտությունը, խորհրդաժողով, որ կմշակի ազգային միասնության ու վերածնման միասնական ծրագիր։

Մեր ժողովուրդը չի կարող և չպետք է հրաժարվի դարերի փորձով ձեռք բերած իր պատմական կողմնորոշումներից, բայց համակողմանի կապերը ռուս ժողովրդի, մեր երկրի մյուս ժողովուրդների հետ պիտի լցվեն նոր բովանդակությամբ, այդ առնչություններին մենք պիտի գնանք հայ ժողովրդի շահերի սթափ գիտակցության արժանապատիվ կեցվածքով։

Մենք պետք է շարունակենք հեռավոր ու մոտիկ մեր պատմությունը խեղաթյուրումներից, կամայական, միտումնավոր մեկնաբանություններից մաքրելու շնորհակալ գործը։ Մեր գերագույն խնդիրը պետք է լինի ստեղծել բոլոր պայմանները ազգային մեր հարստության՝ հայոց լեզվի պետական գոյավիճակի համար, մեր գիտության ու մշակույթի ծաղկման և արժանի ճանաչման համար։ Չէ որ մեր հոգևոր զարգացման հնարավորություններն անսահմանափակ են։

Կարևոր խնդիր է մնում Արցախի պրոբլեմը։ Այն փաստորեն մտել է փակուղի։ Երկու հանրապետությունների միջև լարվածությունն անասելիորեն սրվել է։ Հարևան ժողովուրդների օտարացումը դրամատիկ բնույթ է ստացել։ Ահավոր նյարդային վիճակ է ստեղծվել սահմանամերձ շրջաններում։ Մենք պաշտպանել ու այսուհետև ևս կպաշտպանենք Արցախի հայության ազգային ինքնորոշման իրավունքը։ Արցախի հարցը պետք է լուծվի սահմանադրորեն,



քաղաքակիրթ մակարդակով, մարդու իրավունքների հարգման միջազգային օրենքներին համապատասխան, որոնց ճանապարհն այսօր բռնել է նաև մեր երկիրը։

Հայ և ադրբեջանցի ժողովուրդներին ճակատագիրը դրել է կողք-կողքի, և նրանք կարող են ու պետք է ճգնաժամից համատեղ դուրս գալու ուղիներ փնտրեն։ Մենք պետք է որդեգրենք ոչ թե անպտուղ առճակատման, այլ կայուն ու խելամիտ բանակցությունների ուղին, այդ բանակցությունների հիմքում ունենալով մեր ժողովրդի շահը, պատիվն ու արժանապատվությունը։

Ստեղծված ծանր վիճակից դուրս գալու համար առաջին հերթին ամեն գնով պետք է կանխել հետագա արյունահեղությունը, կայունացնել և ամրացնել վիճակը հանրապետության սահմանային շրջաններում։

Մեզ բոլորիս խորապես անհանգստացնում է աղետի գոտում ստեղծված տագնապալի վիճակը։ Արդեն փաստ է, որ ձախողվել են նախապես կազմված ծրագրերը, ճշգրտման կարիք ունեն հաստատված մոտեցումները։ Պահանջվում է կտրուկ բարելավել գործերի վիճակը, առավելագույն չափով կենտրոնացնել մեր ուժերն ու հնարավորությունները, խելամտորեն օգտագործել երկրի և աշխարհի անշահախնդիր օգնությունը՝ մարդկանց դուրս բերելու այդ անչափ ծանր կացությունից։

Գիտակցելով, որ աղետի գոտու վերականգնումը հիմնականում պայմանավորված է անհրաժեշտ ռեսուրսների կայուն մատակարարմամբ, ամեն ինչ պետք է արվի պետական երկաթուղում պետական կարգուկանոն մտցնելու, հանրապետության ամոթալի շրջափակումը վերացնելու համար։

Պակաս մտահոգիչ չէ նաև բռնագաղթի ենթարկվածների վիճակը։ Անհրաժեշտ է, որքան էլ ծանր լինի մեզ համար, անհապաղ լուծել նրանց բնակության, աշխատանքի տեղավորման, լքված գյուղերի բնակեցման խնդիրները։

Մեր ժողովրդին շատ են հուզում նաև հանրապետությունում հանցագործությունների անարգել ծավալումը, անիշխանության դրսևորումները։ Իհարկե, տագնապալի այս իրավիճակը կայունացնելու բախտորոշ լծակը օրենքի և օրինականության հաստատումն է։ Բայց անհնար է արդյունքի հասնել առանց համաժողովրդական գիտակցության։ Օրենքը պետք է հարգի մարդուն, պաշտպանի նրա իրավունքը, բայց մարդը, իր հերթին, պետք է հարգի օրենքը։ Այլ ճանապարհ չկա։

Եվս մի կարևոր հարցի մասին։ Մեր անհաջողությունների ու մարդկանց արդարացի դժգոհության հիմնական պատճառներից մեկը ոչ ճիշտ կադրային քաղաքականությունն է։ Այստեղ նույնպես գլխավոր պատճառը հստակ մտածված մեխանիզմների բացակայությունն է, սուբյեկտիվիզմի ու կամայականության, տեղայնության և հովանավորչության դրսևորումները։ Դրանք արմատախիլ անելու համար ճշմարիտ ուղին մարդկանց ինքնադրսևորման ու ինքնահաստատման համար օբյեկտիվ պայմանների ստեղծումն է, բնականոն հաջորդայնության հաստատումը։

Ես խորապես համոզված եմ, որ մենք հաջողության կհասնենք միայն այն ժամանակ, երբ բառացիորեն յուրաքանչյուրը կգիտակցի իր վաստակի կարևորությունը ընդհանուր գործի մեջ, կկարողանա վեր կանգնել նեղ անձնական կամ խմբակային շահերից, կապրի իր ժողովրդի ցավով ու հոգսերով։ Սրանք այսօր լոկ պարապ խոսքեր չեն։ Դա փաստորեն մեր միակ ճանապարհն է։ Մեր ժողովուրդը ապրել ու գոյատևել է իր իմաստնության, աշխատասեր ու արարող ոգու շնորհիվ։ Այն մենք թանկ պետք է գնահատենք։ Եվ մենք պատրաստ ենք համագործակցելու ազգային-հասարակական բոլոր այն շարժումների ու կազմակերպությունների հետ, որոնց մտածելակերպն ու գործելակերպը բխում են հայ ժողովրդի արմատական շահերից։

Հասարակության վերակառուցումը և վերաշինումը հեշտ չի տրվում։ Այսօր միախառնվել են բազմաթիվ իրարամերժ ու հակասական պրոցեսներ։ Նորի ու հնի պայքարը սկզբունքային բնույթ է կրում։ Սակայն համամարդկային արժեքները, որոնք այսօր արդարացիորեն գերապատվություն են ձեռք բերում, անսասան են ու մնայուն։ Դրանք էլ հենց պետք է դառնան բոլոր տիպի հոսանքների ու շարժումների ցեմենտող ուժը։ Նորի ծնունդը խիստ ցավագին և կործանարար չպետք է լինի։ Սխալվելու իրավունք այլևս մեզ չի տրված։

*Մենք գտնվում ենք հասարակական-քաղաքական լուրջ իրադարձությունների շեմին՝ գումարվելու են ԽՄԿԿ XXVIII և Հայաստանի կոմկուսի XXIX համագումարները։ Սկսվել է Հանրապետության ժողովրդական դեպուտատության թեկնածուների առաջադրումը։ Մոտ ապագայում շատ բան կախված կլինի այն բանից, թե ովքեր կընտրվեն մեր նոր պառլամենտում, որքանով ի վիճակի կլինեն ստանձնելու պետական կառավարման նոր և անչափ պատասխանատու ֆունկցիաները։*

*Մենք բոլորս ուզում ենք ունենալ այնպիսի հայրենիք, որով կարողանանք հպարտանալ, արժեքների այնպիսի համակարգ, որին կարողանանք հավատալ և այնպիսի օրենքներ, որոնցով կարողանանք ապրել և ղեկավարվել։ Մեր բոլոր քայլերը պետք է նպատակամղված լինեն հենց դրանց իրականացմանը։ Հանրապետության յուրաքանչյուր քաղաքացի գործնականում պետք է զգա, որ ինքը սոցիալապես պաշտպանված է։*

*Ցավոք, իրողությունն այնպիսին է, որ մենք հասել ենք մի սահմանագծի, որից այն կողմ աղետն է։ Այս տագնապով է համակված մեր ողջ ժողովուրդը։ Ահա թե ինչու հարկավոր են արագ, վճռական գործողություններ, միաբանություն և խոր հավատ ապագայի հանդեպ։*

*Անցնելով այս պատասխանատու աշխատանքին և քաջատեղյակ լինելով մեզանում ստեղծված իրավիճակին՝ իմ ուժերի և հնարավորությունների գերագույն լարումով, ձեր ամենքի ու ժողովրդի աջակցությամբ ես կանեմ ամեն ինչ հանրապետությունը տնտեսական, սոցիալական, հոգեբանական ու քաղաքական ճգնաժամից դուրս բերելու համար։*

*Կրկին շնորհակալություն մեծագույն վստահության համար։*

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1990 թվականի մարտի 11-ին աշխատանքն սկսեց ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը։ Պլենումի քննարկմանն են մտցված հետևյալ հարցերը՝**

**1. ԽՍՀՄ սահմանադրության 6-րդ և 7-րդ հոդվածների առթիվ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների արտահերթ երրորդ համագումարում առաջարկություններ մտցնելու մասին։**

**2. ԽՍՀՄ XXVIII համագումարի հրավիրման ժամկետների, կուսակցության մեջ հաշվետու-ընտրական կամպանիայի անցկացման, համագումարի ներկայացուցչության նորմայի և պատվիրակների ընտրության կարգի մասին։**

**3. ԽՄԿԿ կանոնադրության նախագծի մասին։**

**4. ԽՄԿԿ կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովի կանոնադրության նախագծի մասին։**

**5. ԽՄԿԿ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատի ընտրություններ։**

**Պլենումում զեկուցումով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը։**

**Պլենումի մասնակիցներին հնարավորություն էր ընձեռվել նախապես ծանոթանալ ԽՄԿԿ կանոնադրության նախագծին և օրակարգի հարցերին վերաբերող մյուս նյութերին։**

**Մտքերի փոխանակությանը մասնակցեցին ԽՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար Յու. Ա. Պրոկոֆևը, Կիրգիզական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ա. Ջումագուլովը, Ղազախստանի կոմկուսի Ջամբուլի մարզկոմի առաջին քարտուղար Ս. Մ. Բայժանովը, ԽՍՀՄ ներքին գործերի մինիստր Վ. Վ. Բակատինը, ԽՄԿԿ Տուլայի մարզկոմի առաջին քարտուղար Յու. Ի. Լիտվինցևը, ԽՍՀՄ արդարադատության մինիստր Վ. Ֆ. Յակովլևը, ՀԱՄԿԽ-ի քարտուղար Վ. Մ. Միշինը, Լեհաստանի Հանրապետությունում ԽՍՀՄ արտակարգ ու լիազոր դեսպան Վ. Ի. Բրովիկովը, Լիտվայի կոմկուսի (ԽՄԿԿ պլատֆորմով) ժամանակավոր Կենտկոմի երկրորդ քարտուղար Վ. Ն. Շվեդը, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար, «Պրավդա» թերթի գլխավոր խմբագիր Ի. Տ. Ֆրոլովը, ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Միրոնենկոն, Բելոռուսիայի կոմկուսի Գրոդնոյի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Մ. Սեմյոնովը, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղարի պաշտոնակատար Ս. Ս. Շատալինը։**

**Պլենումում կազմվեց ԽՄԿԿ կանոնադրության նախագծի լրամշակման և Կենտկոմի պլենումի մյուս փաստաթղթերի նախապատրաստման խմբագրական հանձնաժողով։**

**Պլենումը որոշում ընդունեց օրենսդրական նախաձեռնության կարգով ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների արտահերթ երրորդ համագումարի քննարկմանը ԽՍՀ Միության օրենքի նախագիծ ներկայացնել ԽՍՀՄ սահմանադրությունը (հիմնական օրենքը) քաղաքական սիստեմի հարցերի առթիվ (ԽՍՀՄ սահմանադրության 6-րդ և 7-րդ հոդվածներ) փոփոխելու և լրացնելու մասին։**

**ԽՄԿԿ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատի ընտրությունների հարցի առթիվ հաղորդումով հանդես եկավ ընտրական հանձնաժողովի նախագահ Վ. Ա. Կոպտյուգը։**

**Պլենումում ելույթ ունեցան ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուները՝ Մոսկվայի՝ ԽՍՀ Միության 50-ամյակի անվան ավտոմատ գծերի գործարանի փականագործ Պ. Ա. Աբրոսովը, Գորկու ավտոմոբիլի գործարանի դարբին Ն. Պ. Կուստարյովը, Մոսկվայի «Հաստոցակոնստրուկցիա» գործարանի էլեկտրամոնտաժորդ-փականագործ Ա. Պ. Շուստովը։**

**Գաղտնի քվեարկությամբ ԽՄԿԿ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատ ընտրվեց Ն. Պ. Կուստարյովը։**

**Մարտի 14-ին ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը շարունակեց աշխատանքը։ Պլենումը քննարկեց Խորհրդային Միության կոմունիստական կուսակցությունից ԽՍՀՄ-ի պրեզիդենտի պոստի թեկնածուի առաջադրման հարցը։**

**Պլենումի աշխատանքին մասնակցում էին ԽՄԿԿ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատները։**

**Պլենումում ելույթ ունեցան Ուկրաինական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Վ. Ա. Մասոլը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Գ. Գ. Գումբարիձեն, ԽՄԿԿ Չիտայի մարզկոմի առաջին քարտուղար Ն. Ի. Մալկովը, Ամերիկայի Միացյալ Նահանգներում ԽՍՀՄ արտակարգ ու լիազոր դեսպան Յու. Վ. Դուբինինը, Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Պ. Կ. Լուչինսկին, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Յա. Վագրիսը, ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովը։**

**Պլենումը որոշեց ԽՍՀՄ-ի պրեզիդենտի պոստի համար Խորհրդային Միության կոմունիստական կուսակցությունից թեկնածու առաջադրել ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովին։**

**Պլենումում հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը։**

**ԽՄԿԿ Կենտկոմի պլենումը մարտի 16-ին շարունակեց աշխատանքը՝ քննարկելով ԽՄԿԿ կանոնադրության նախագիծը և օրակարգի մյուս հարցերը։**

**Պլենումի աշխատանքին մասնակցեցին կուսակցության քաղկոմների, շրջկոմների, որոշ սկզբնական կուսկազմակերպությունների կուսկոմիտեների քարտուղարներ, ինչպես նաև ԽՄԿԿ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատներ։**

**Մտքերի փոխանակությանը մասնակցեցին ԽՍՀՄ Գերագույն խորհրդի էկոլոգիայի հարցերի և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերի կոմիտեի նախագահ Կ. Սալիկովը, Կարագանդայի մետալուրգիական կոմբինատի ձուլագործ Կ. Զ. Ռոմազանովը, Ուկրաինայի կոմկուսի Պոլտավայի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ս. Մյալկոտան, ԽՄԿԿ Խանտի-Մանսիական օկրուգկոմի (Տյումենի մարզ) առաջին քարտուղար Վ. Ա. Չուրիլովը, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ե. Կ.**

Լիգաչովը, խորհրդային բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության պետ Ա. Դ. Լիզիչովը, ԽՄԿԿ Թաթարիայի մարզկոմի առաջին քարտուղար Մ. Շ. Շայմիևը, «Իժևսկի մեխանիկական գործարան» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար Գ. Վ. Սիվեցը, ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայի ռեկտոր Ռ. Գ. Յանովսկին, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ն. Ա. Նազարբաևը, ԽՄԿԿ Մոսկվայի Վորոշիլովյան շրջկոմի առաջին քարտուղար Ա. Ի. Զեմսկովը, Դոնեցկի մարզի Մակեևկա քաղաքի «Սովետսկայա» հանքի կուսկոմիտեի քարտուղար Ս. Վ. Ռաֆայիլովը, Իրկուտսկի պոլիտեխնիկական ինստիտուտի կուսկոմիտեի քարտուղար Բ. Բ. Պոնոմարյովը, Լիտվայի կոմկուսի (ԽՄԿԿ պլատֆորմով) ժամանակավոր Կենտկոմի առաջին քարտուղար Մ. Մ. Բուրոկյավիչյուսը, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար Լ. Ն. Զայկովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար Ս. Ի. Գուրենկոն, Մոսկվայի բարձրագույն կուսակցական դպրոցի կուսկոմիտեի քարտուղար Վ. Ի. Միտրոխինը, ԽՄԿԿ Տուվայի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Չ. Շիրշինը, Կույբիշևի ավիացիոն գործարանի հավաքող-փականագործ Գ. Ի. Անուֆրիևը, ԽՄԿԿ Ռոստովի մարզկոմի առաջին քարտուղար Բ. Մ. Վոլոդինը, ԽՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար Յու. Ա. Պրոկոֆևը, Մինսկի ժամացույցի գործարանի կուսկոմիտեի քարտուղար Վ. Վ. Չիկինը, Ուկրաինայի կոմկուսի Չերկասիի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ա. Ռուժիցկին, Թուրքմենստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Ա. Նիյազովը, ԽՄԿԿ Մոսկվայի մարզի Ժուկովսկիի քաղկոմի առաջին քարտուղար Յու. Ն. Շոգինը:

ԽՄԿԿ կանոնադրության նախագծի վերջնամշակման և Կենտկոմի պլենումի մյուս փաստաթղթերի նախապատրաստման խմբագրական հանձնաժողովի կողմից ելույթ ունեցավ Գ. Պ. Ռազումովսկին:

Պլենումը ընդունեց որոշում «ԽՄԿԿ XXVIII համագումարի գումարման, կուսակցության հաշվետու-ընտրական կամպանիայի անցկացման ժամկետների, ներկայացուցչության նորմայի և համագումարի պատվիրակների ընտրության կարգի մասին»:

Պլենումը խմբագրական հանձնաժողովին և Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարեց ԽՄԿԿ կանոնադրության նախագիծը վերջնամշակել՝ հաշվի առնելով ստացված դիտողությունները և կայացած քննարկումը:

Պլենումում որոշում ընդունվեց Ռուսաստանի կուսակցական կոնֆերանս անցկացնելու մասին:

Պլենումը հավանություն տվեց ԽՄԿԿ կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովի կանոնադրության նախագծին:

ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Մ. Ս. Գորբաչովը:

Դրանով ԽՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

---

# Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում

Ընկերնե՛ր, Կենտկոմի սույն պլենումը կարելի է դիտել որպես փետրվարյան պլենումի անմիջական շարունակություն: Նրա գլխավոր խնդիրն է ավարտել նախահամագումարյան բանավեճի համար փաստաթղթերի նախագծերի մշակումը՝ քննարկել նոր կանոնադրության նախագիծը և լուծել համագումարի նախապատրաստման կազմակերպական հարցերը: Համապատասխան փաստաթղթերն ու առաջարկությունները ձեր ձեռքին կան:

Նախահամագումարյան բանավեճը ըստ էության արդեն սկսվել է և գնալով ծավալվում է: Այդ անտարակույս բարենպաստ գործընթացին լավ ազդակ տվեց կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագիծը:

Նախագիծը կուսակցության մեջ և երկրում ընկալվեց որպես մի լուրջ կոնցեպտուալ փաստաթուղթ, որի մեջ արտացոլում են գտել թե՛ գործերի վիճակի քննադատական վերլուծությունը, թե՛ երկրի առջև ծառացած սոցիալ-տնտեսական ու քաղաքական անչափ սուր պրոբլեմների լուծման ուղիները և թե՛ մեր հասարակության նորացման սկզբունքային նպատակները:

Կցանկանայի ընդգծել, որ մենք պլատֆորմի նախագիծը դիտում ենք հենց որպես հիմք և բազա կուսակցության ու հասարակության մեջ ծավալվող բանավեճի համար: Ուստի նախագծի նկատմամբ բազմաշերտ, ես կասեի, բազմաձայն վերաբերմունքը բնական է, ավելի վատ կլիներ, եթե, ինչպես առաջներում, բոլոր կողմերից հնչեին ձևական հավանության բացականչություններ: Մեր նպատակն էր, և ես այս մասին խոսել եմ կուսակցության Կենտրոնական կոմիտեի նախորդ պլենումում, ստեղծել համակուսակցական քննարկման համար բաց փաստաթուղթ և դրանով իսկ նպաստել կոլեկտիվ որոնման հետագա ակտիվացմանը:

Անշուշտ, մենք տեսնում ենք հիմնականում վերակառուցման հունով, մեր սոցիալիստական ընտրության շրջանակներում տեղի ունեցող այդ ամբողջ գործընթացը: Այնպես որ, քննադատական, դրական և հաստատակամ որոնումը մեզ պարզապես կենսականորեն անհրաժեշտ է: Այդ գործընթացը կշարունակվի ընդհուպ մինչև համագումար, որը և կասի վերջնական խոսքը՝ ընդունելով կուսակցության մոտակա հեռանկարի ծրագրային փաստաթուղթը:

Սկսված բանավեճը ցույց է տալիս, որ նրա կենտրոնում գտնվում են կուսակցությունը բարեփոխելու հարցերը: Եվ դա միանգամայն հասկանալի է, որովհետև այստեղ հիմա, ինչպես կիզակետում, միահյուսվում են հասարակական զարգացման բազում պրոբլեմներ:

Պլատֆորմի նախագծի մեջ ձևակերպված են, ինչպես հիշում եք, մեր կուսակցության վերակառուցման սկզբունքային հիմնադրույթները: Հիմա կանոնադրության նախագծի մեջ դրանք ծավալուն մարմնավորում են ստանում:

Ձեզ ներկայացված փաստաթուղթը ոչ թե ծնվել է ապարատային աշխատողների գլուխներում, այլ իրենից ներկայացնում է այն կոնստրուկտիվ առաջարկությունների հավաքանին, որ ստացվել են ԽՄԿԿ Կենտկոմում, կուսակցական թերթերում ու ամսագրերում, մշակվել մեր տեսական կենտրոններում՝ մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտում, հասարակական գիտությունների ակադեմիայում, նրանց հանրապետական մասնաճյուղերում, կուսակցական բուհերում: Վերջին ամիսներին ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեն սկզբնական, տեղական կուսակցական կազմակերպություններից, առանձին կոմունիստներից կանոնադրության 40 լրիվ նախագիծ, կուսակցական ծողովների և կուսակցական կոմիտեների պլենումների հազարավոր որոշումներ է ստացել կանոնադրական հարցերի վերաբերյալ: Այդ ամենը ուշի-ուշով ուսումնասիրվել է և ամփոփվել Կենտկոմի հանձնաժողովներում, բազմիցս քննարկվել քաղբյուրոյի նիստերում:

Նախապատրաստված փաստաթուղթն իր հիմքում, ինչպես մեզ թվում է, արտացոլում է ԽՄԿԿ-ի դեմոկրատական բարենորոգման ուղիների ու եղանակների առթիվ եղած գերակշռող հայացքները: Փաստաթուղթը քննարկվելու է ամբողջ կուսակցության կողմից, ուստի մենք այսօր ոչ միայն հանրագումարի ենք բերում նրա ստեղծման մեծ փուլը, այլև բացում ենք կանոնադրության լրամշակման աշխատանքի մի նոր փուլ:

Մշակելով կանոնադրության նախագիծը, մենք ելակետ ենք ունեցել հասարակության մեջ կուսակցության տեղի, նրա ֆունկցիաների, ինչպես նաև կուսակցական քաղաքականության իրականացման ձևերի, միջոցների ու եղանակների նոր, արդեն վերակառուցման տարիներին ձևավորված ըմբռնումը: Այսպիսով, խոսքը վերաբերում է մի այնպիսի փաստաթղթի մշակման, որը կոչված է դառնալու այն նորացված կուսակցության կյանքի հիմնական օրենքը, դեպի որը մենք գնում ենք՝ մարդասիրական կուսակցության դեմոկրատական սոցիալիզմի:

Այդ նոր ըմբռնման գլխավոր բաղադրիչը XIX կուսկոնֆերանսում ձևակերպված՝ կուսակցական ու պետական մարմինների ֆունկցիաների բաժանման սկզբունքն է, պետական սիստեմից կուսակցության հետևողական դուրս գալը՝ որպես բոլոր պրոցեսները անմիջականորեն կառավարող միջուկի: Այսինքն խոսքը վերաբերում է կուսակցության վերադարձին իր սկզբնական կոչմանը՝ լինելու հասարակության ավանգարդային քաղաքական ուժը, մշակելու և հասարակությանն առաջարկելու հեռանկարային զարգացման գծեր, ձգտելու դրանց իրագործմանը պետական ու հասարակական կառույցվածքներում աշխատող կոմունիստների միջոցով:

Մենք նորացված ԽՄԿԿ-ն դիտում ենք որպես համախոհ կոմունիստների միություն, որն իր գործունեությունը հիմնում է Մարքսի, Էնգելսի, Լենինի գաղափարների ստեղծագործական զարգացման վրա, որպես սոցիալիստական ընտրության կուսակցություն, որն արտահայտում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերը, կուսակցություն, որը ձգտում է խորհրդային բազմազգ հասարակության համախմբմանը իր ծրագրային պլատֆորմի հիման վրա:

Մենք հայտարարում ենք, որ ԽՄԿԿ-ն գտնվում է ինտերնացիոնալիզմի դիրքերում, պատրաստ է համագործակցելու կոմունիստական ու բանվորական, սոցիալիստական ու սոցիալ-դեմոկրատական, լիբերալ և ազգային-դեմոկրատական կուսակցությունների, այն բոլոր հասարակական ուժերի ու շարժումների հետ, որոնք հանդես են գալիս խաղաղության և սոցիալական առաջադիմության օգտին:

Այսպիսով, ԽՄԿԿ-ն նորանում է, նոր դիմագիծ է ձեռք բերում գաղափարաքաղաքական սեփական հիմքի վրա: Կանոնադրության նախագիծը համադրված է ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի դրույթների հետ, որոնք նորովի են բնութագրում կուսակցության դերն ու ֆունկցիաները հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր կյանքի բոլոր կողմերի բարենորոգման պայմաններում:

Կուսակցության այդպիսի նորացման գործընթացը դժվարին է և անմիանշանակ: Մի կողմից նրան խանգարում են հին տրամադրություններն ու սովորույթները, կուսակցական շատ աշխատողների, ասենք նաև կուսակցական զանգվածի մի մասի հակումը անմիջական կարգադրական ֆունկցիաների նկատմամբ: Դրանցից հրաժարվելը շատերին թվում է քաղաքական ազդեցության կորուստ, կուսակցական դիրքերի կորուստ, կուսակցության ընդհանուր թուլացում:

Մյուս կողմից երևան են եկել որոշակի թվով մարդիկ, որոնք ԽՄԿԿ-ի էվոլյուցիայի մայրուղին տեսնում են նրանում, որ ԽՄԿԿ-ն վերածվի պառլամենտական տիպի կուսակցության և նույնիսկ հեղհեղուկ սահմաններով, ձևական անդամությամբ մի ինչ-որ ձևազուրկ հասարակական-քաղաքական հոսանքի, այսինքն խայտաբղետ կարկատաններով մի վերմակի, որը կցմցված է ամենատարբեր ֆրակցիաներից, խմբերից ու հոսանքներից:

Իհարկե, դեմոկրատական պրոցեդուրաների, ընտրական կամպանիաների շրջանակներում քաղաքական լիդերության համար մղվող պայքարը այսուհետև կլինի ԽՄԿԿ-ի հիմնական ֆունկցիաներից մեկը: Այդ ֆունկցիայի նկատմամբ անհրաժեշտ է մշակել համապատասխան կանոնադրական դրույթներ, նկատելիորեն փոխել կուսակցական աշխատանքի մեթոդները և դրա կազմակերպման ձևերը: Այդպիսի նորություններ կուսակցական կանոնադրության նախագծի մեջ մտցված են: Թերևս կպահանջվի դրանց լրացուցիչ մշակում և զարգացում: Դա ցույց կտա նախագծի քննարկումը:

Բայց չի կարելի հաշվի չառնել գործի մյուս կողմը: Դա այն է, որ ԽՄԿԿ-ն, լինելով կառավարող կուսակցություն, ժողովրդի առջև քաղաքականապես պատասխանատու է պետության, մեր սոցիալիստական ֆեդերացիայի վիճակի համար, էկոնոմիկայի ասպարեզում տիրող դրության, քաղաքացիների անվտանգության, նրանց իրավունքների ու ազատությունների ապահովման, երկրի միջազգային շահերի ապահովման համար: Դա մեզ համար սկզբունքորեն բացառում է թեթևամիտ պառլամենտական խաղերը: Ավելին, դա պահանջում է, որ ԽՄԿԿ-ն մի կողմ չքաշվի այն կենսական պրոբլեմների լուծմանը մասնակցելուց, որոնցով ապրում է երկիրը, վարի լուրջ քաղաքականություն, որը հնարավորություն ընձեռի արգասավոր կերպով օգտագործել քաղաքական լիդերության մանդատը:

Ես կարծում եմ պետք է հաստատուն կերպով «ոչ» ասել թե նրանց, ովքեր դիմադրում են հասարակության մեջ կուսակցության դերի ու տեղի հասունացած փոփոխություններին և թե նրանց, ովքեր օգտագործելով կուսակցության բարենորոգում կատարելու մեր ցանկությունն ու վճռականությունը, կուզենային, որ իրենք ուղղություն տային դրանց, հույս ունեն, թե կթուլանան մեր քաղաքական դիրքերը:

Մենք ԽՄԿԿ-ի նորացման գլխավոր գիծը տեսնում ենք նրանում, որ նրա ավանգարդային դերը ոչ միայն չկորսվի, այլև ընդհակառակը, ձևականորեն հռչակվածից վերածվի քաղաքական իրողության, արդյունավետորեն ազդի հասարակության կյանքի տարբեր կողմերի վրա:

Բոլոր քննարկումների ընթացքում որոշ ընկերների մեջ այսպիսի հարց է ծագում. իսկ սկսված փոփոխությունները արդյոք չե՞ն հանգեցնի մեր լենինյան կուսակցության հենց նախաստեղծ բնույթի փոխակերպության:

Հիմա այս թեմայով քիչ խոսակցություններ չեն լինում: Ձայներ են հնչում, թե ԽՄԿԿ-ն արդեն իրեն սպառել է իր հիմքում և անհրաժեշտ է նրան փոխարինել մի այլ կուսակցությամբ, որն օժտված լինի նախածին այլ հատկանիշով:

Այս կապակցությամբ մեջտեղ են հանում ԽՄԿԿ-ն սոցիալ-դեմոկրատական, սոցիալիստական կամ այլ կուսակցություն վերանվանելու գաղափարը: Այս գաղափարի էությունն է ԽՄԿԿ-ի անվանումից հանել «կոմունիստական» բնորոշումը, որը բխում է կուսակցության վերջնական իդեալից, երկարաժամկետ խնդիրներից: Կարծում եմ, որ նման առաջարկությունն ընդունել չի կարելի: Դրա իրագործումը լուրջ հարված կհասցնի ԽՄԿԿ-ի գաղափարական հիմքին, հիասթափություն կառաջացնի շատ կոմունիստների և անկուսակցականների մեջ, որոնք ԽՄԿԿ-ին զորավիգ են որպես վսեմ նպատակների կուսակցության:

Պետք է տեսնել նման քայլի նաև միջազգային հետևանքները, եթե այդ քայլը հանկարծ ձեռնարկվի: Դա բացասաբար կազդեր այն կուսակցությունների գործունեության վրա, որոնք դժվարին պայմաններում պաշտպանում են կոմունիստական գաղափարը:

Ըստ էության ԽՄԿԿ-ի դերի նոր մեկնաբանությունն էլ թելադրում է նրա կանոնադրության արմատական վերակառուցման անհրաժեշտությունը: Եվ ոչ միայն կանոնադրության, այլև մի շարք պետական ակտերի, ներառյալ նաև ԽՍՀՄ սահմանադրության:

Այս կապակցությամբ նպատակահարմար է թվում, որ Կենտրոնական կոմիտեն ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարում օրենսդրական նախաձեռնությամբ հանդես գա հիմնական օրենքի մեջ կուսակցությանը վերաբերող հոդվածների փոփոխության վերաբերյալ: Համապատասխան առաջարկությունները ձեր ձեռքին կան: Դրանց իմաստը հանգում է այն բանին, որ բացառվի ԽՄԿԿ-ի ղեկավար դերի մասին, կուսակցության՝ որպես քաղաքական սիստեմի միջուկի մասին դրույթը, հիմնական օրենքի մեջ ԽՄԿԿ-ի և մյուս քաղաքական ու հասարակական կազմակերպությունների համար վավերագրվեն հավասար հնարավորություններ՝ մասնակցելու, բնականաբար, օրինական, դեմոկրատական ձևերով, հասարակական-քաղաքական կյանքին, պայքարելու իրենց ծրագրային նպատակների իրագործման համար: Կարծում ենք, որ նման փոփոխությունները համահունչ են կուսակցության դերի նոր ըմբռնմանը, որը արձանագրված է թե Կենտկոմի պլատֆորմի նախագծի և թե կանոնադրության նախագծի մեջ:

Առաջարկելով կուսակցության նոր կանոնադրություն, մենք մտադիր ենք օրինականացնել նաև ներկուսակցական կյանքի խոր վերափոխումները: Դրանք կկերպարանափոխեն ԽՄԿԿ-ն, նրան կտան իրոք դեմոկրատական բնույթ: Ներկուսակցական հարաբերությունները ընդսմին պետք է ձեռք բերեն նոր հատկանիշներ՝ դեմոկրատիզմ և ընկերականություն, կարծիքների բազմակիություն և հրապարակայնություն, փոքրամասնության շահերի հարգում՝ զուգորդված անհրաժեշտ կուսակցական կարգապահության հետ: Ընդ որում կուսակցությունը պետք է, անշուշտ, մնա

որպես ամրակուռ և միասնական կազմակերպություն, որն ապրում է մի ընդհանուր օրենքով, որին կամավոր համաձայնում է կուսակցության մեջ մտնող յուրաքանչյուր ոք:

Դեմոկրատացման այս գիծը անդրադարձել է կանոնադրության նախագծի հենց տրամաբանության, նրա կառուցվածքի և ծավալի մեջ: Հաշվի են առնված բազմաթիվ ցանկություններ այն մասին, որ նոր կանոնադրությունը պետք է լինի հակիրճ, պարունակի կուսակցական կյանքի միայն հիմնարար նորմաները, հնարավորություն ընձեռի լայն ասպարեզ բացել կոմունիստների ինքնուրույն ստեղծագործության համար, ապահովի կուսակցական կազմակերպությունների իրական ինքնավարության երաշխիքներ:

Նոր կանոնադրության նախագիծը իր ծավալով գրեթե մեկ երրորդով փոքր է այժմ գործող կանոնադրությունից, տասը բաժնի փոխարեն պարունակում է վեց բաժին և 72 պարագրաֆի փոխարեն՝ 39: Թեպետև երեկ ընկերների հետ զրուցելիս ես զգացի, որ այստեղ էլ տակավին ռեզերվներ կան:

Կանոնադրական նորմաների փոփոխությունների գլխավոր իմաստն այն է, որ կոմունիստը դրվի կուսակցական կյանքի կենտրոնում, նրա համար ապահովվեն կուսակցության քաղաքականության մշակմանը և դրա իրագործմանը, ղեկավար կուսակցական մարմինների կազմավորմանը, դրանց գործունեության վերահսկմանը մասնակցելու ամենալայն հնարավորությունները:

Սա նախ և առաջ արտացոլում է գտել ԽՄԿԿ-ի անդամությանը վերաբերող հարցերում: Այստեղ ստեղծվում է նոր իրավիճակ: Նախ, ԽՄԿԿ-ի անդամ ընդունելու բոլոր իրավունքները, ներառյալ այս հարցի վերջնական լուծումը, հանձնվում են նրան, ով ցանկացած ինստանցիայից ավելի լավ է ճանաչում մարդկանց. հանձնըվում են սկզբնական կուսակցական կազմակերպությանը: Երկրորդ, նախատեսվում է վերացնել թեկնածուական ստաժը և ԽՄԿԿ-ի անդամ ընդունվելիս պարտադիր կերպով երաշխավորագրեր ներկայացնելը: Երրորդ, մտցվում է կուսակցությունից կամավոր կերպով դուրս գալու դրույթ, ինչը, անշուշտ, չի նշանակում, թե կուսակցական կազմակերպությունները պետք է հեռանան ԽՄԿԿ-ի շարքերի ամրապնդման, այդ շարքերը նրանցից մաքրելու աշխատանքից, ում վարքագիծը արատավորում է կուսակցությանը, անհամատեղելի է նրա կանոնադրության հետ:

Առաջարկվում է խուսափել կոմունիստի պարտականությունների մանրամասն թվարկումից: Ավելի հստակ են ձևակերպվում կուսակցության անդամի իրավունքները, նրա կուսակցական ու քաղաքացիական ակտիվության երաշխիքները:

Կոմունիստների դերի բարձրացման գաղափարով են տոգորված նաև կուսակցության մեջ ընտրովիության մեխանիզմը դեմոկրատացնելու առաջարկությունները: Դրանք նախատեսում են ամբողջ կուսակցական զանգվածի մասնակցություն այդ գործընթացին:

Վավերագրվում են այլընտրականությունը, ներքևից թեկնածություններ առաջադրելու սկզբունքները, բոլոր կոմունիստների անմիջական մասնակցությունը կոնֆերանսների ու համագումարների պատվիրակների ընտրություններին, կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարների ընտրությունը կոնֆերանսներում ու համագումարներում և ոչ թե պլենումներում:

Նախատեսված է կուսակցական կազմակերպությունների իրավունքը՝ կոնֆերանսի կամ համագումարի պատվիրակների ընտրության հետ միաժամանակ թեկնածուներ առաջադրել վերադաս կուսակցական մարմնի կազմի համար: Մտցվում են կուսակցական կոմիտեների բոլոր անդամների հաշվետվություն, կոմունիստների վստահությունը չարդարացրածներին հետ կանչելու հնարավորություն ընտրովի մարմնից, այդ մարմնի կազմացրում նախքան լիազորությունների ժամկետը լրանալը, ինչպես նաև կուսակցության բոլոր ընտրովի անձանց՝ իրենց պոստերում մնալու լիազորությունների սահմանափակում երկու ժամկետով:

Կուսակցական կյանքի դեմոկրատացման տեսանկյունից նորացվում են կանոնադրության նաև այն նորմաները, որոնք կարգավորում են կուսակցության կազմակերպական կառուցվածքը: Առաջարկություններ էին արվում կուսակցությունը կառուցելու միանգամայն ըստ տարածքային հատկանիշի: Սակայն նման մոտեցումը կհանգեցներ կուսակցության խզման աշխատավորական կոլեկտիվներից, մասսաների հետ նրա կապի թուլացման: Ուստի, պտտահայտվելով կուսակցության կառուցվածքի թե տարածքային և թե արտադրական հատկանիշների պահպանման օգտին, մենք գլխավորը տեսնում ենք բոլոր մակարդակների կուսակցական կազմակերպությունների ինքնուրույնության աճի մեջ: Այսօր կենսականորեն կարևոր է կուսակցական աշխատանքի ղեկավարման ապակենտրոնացում իրագործելը, որպեսզի կուսակցական շարքերի դեմոկրատական միասնության հետ միասին ապահովվի սկզբնական, տեղական կուսակցական կազմակերպությունների, միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների իրական ինքնավարություն: ԽՄԿԿ-ի կանոնադրությունը, մեր կարծիքով, պետք է սահմանի կուսակցական կառուցվածքի այդ օղակների կարգավիճակին վերաբերող միայն ամենահիմնականը, նրանց իրավասությանը դասելով գործողությունների սեփական ծրագրերի և քաղաքական աշխատանքի ձևերի մշակումն ու իրագործումը, կառուցվածքային, կադրային, հրատարակչական, ֆինանսական շատ հարցերի լուծումը:

Կանոնադրության մեջ հատուկ ուշադրություն է նվիրված սկզբնական կուսակցական կազմակերպությանը՝ որպես կուսակցության հիմքի: Մենք ձգտել ենք, որ կանոնադրական նորմաներով վավերագրենք կուսակցության ստորին օղակների հարաճուն ազդեցությունը ԽՄԿԿ-ի քաղաքականության մշակման վրա, նրանց գործունեությունը ազատենք վերադաս մարմինների, ապարատի մանրախնդիր միջամըտությունից:

Նոր կանոնադրությունը սկզբնական կուսկազմակերպությունների համար հնարավորություն է երաշխավորում ինքնուրույն և պատասխանատու կերպով լուծելու գործունեության ծրագրերի և ձևերի, իրենց կառուցվածքի, ժողովների, քաղաքական միջոցառումների անցկացման պարբերականության ու կարգի հետ առնչված հարցերը:

Կանոնադրության նախագծի մեջ ուժեղ շեշտադրված է, ես հուսով եմ, դուք դրա վրա ուշադրություն դարձրած կլինեք, այնպիսի պայմանների ստեղծումը, որոնք նպաստեն կուսակցության շրջկոմների, քաղկոմների ակտիվ գործունեությանը: Մենք գտնում ենք, որ կուսակցական կառուցվածքի այդ հենակետային օղակների դերի բարձրացումը, որոնք ամենից ավելի մոտիկ են կանգնած սկզբնական կազմակերպություններին, անմիջականորեն քաղաքական աշխատանք են կատարում բնակչության շրջանում, այժմ պետք է դառնա հիմնական գծերից մեկը հասարակական կյանքի դեմոկրատացման գործընթացում:

Այս տեսակետից մենք անընդունելի ենք համարում կուսակցության շրջկոմները, քաղկոմները, ինչպես նաև մարզկոմները, երկրկոմները կազմացրելու առաջարկությունները, որոնք իբր ավելորդ անջրպետներ են Կենտրոնական կոմիտեի և սկզբնական կուսակցական կազմակերպությունների միջև: Դժվար չէ պատկերացնել նման «բարենորոգման» հետևանքները:

ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ի վիճակի չի լինի անմիջական կապ իրականացնել ավելի քան 400 հազար սկզբնական կազմակերպությունների հետ: Իսկ կոմունիստները շրջաններում, քաղաքներում, մարզերում, երկրամասերում գործերի վիճակի վրա ազդելու հնարավորությունը կկորցնեն ավելի մեծ չափով, քան լճացման ժամանակներում, կներփակվեն իրենց լոկալ շահերի շրջանակում: Նույնիսկ ժողովրդական դեպուտատների խորհուրդների ընտրություններում քաղաքական պայքարը նրանք չեն կարողանա մղել քիչ թե շատ արդյունավետորեն, ինչի հույսն էլ ըստ երևույթին փայփայում են կուսակցական հստակ կառուցվածքի հակառակորդները:

Ի դեպ, արևելաեվրոպական երկրների փորձը վկայում է, որ կուսակցության թուլացումը տեղի է ունեցել հենց այն բանից հետո, երբ քանդվել են շրջանային ու քաղաքային օղակները:

Հանդես գալով կուսակցության գոյություն ունեցող կառուցվածքը քանդելու պահանջների դեմ, մենք բնավ չենք պահանջում, որ այդ կառուցվածքը մնա քարացած վիճակում: Այս հարցին վերաբերող կանոնադրական դրույթները լայն ասպարեզ են տալիս ստեղծագործական մոտեցումների համար: Նկատի է առնվում հրաժարվել երկրի վարչատարածքային բաժանման նկատմամբ կուսակցության կառուցվածքի խստագույն կախումից, որը, ինչպես հայտնի է, միանգամայն հասկանալի էր նախկինում, երբ կուսակցական կոմիտեները իրենց ռեգիոններում կառավարում էին անխտիր ամեն ինչը: Կուսակցության բոլոր օղակներին իրավունք է տրվում, որ իրենք լուծեն կառուցվածքային հարցերը ընդհուպ մինչև շրջկոմների, քաղկոմների և այլ կոմիտեների ստեղծումը կամ կազմացրումը:

Կանոնադրության մեջ առաջին անգամ նախատեսվում է կուսակցական կազմակերպությունների քարտուղարների խորհուրդներ, կուսակցական ակումբներ, բա-

նավեճի կենտրոններ և կազմակերպական այլ կազմավորումներ ստեղծելու հնարավորություն, որոնք դուրս են գալիս ավանդական կուսակցական կառուցվածքների շրջանակներից: Սա, անտարակույս, կարևոր քայլ է կուսակցական գործունեության դեմոկրատացման ուղիով և դա կանոնադրության մեջ ըստ էության վավերագրում է վերջին տարիներս մեզանում կուտակված փորձը:

Կանոնադրության նախագծի մեջ որակապես նոր մակարդակով են հաշվի առնվում և լուծվում կուսակցական շինարարության ազգային հայեցակետերը: Ազգամիջյան հարաբերությունների սուր պրոբլեմները ընդգրկեցին նաև կուսակցությունը: Մեծ հրատապություն են ձեռք բերել միութենական հանրապետությունների կոմկուսների փոխհարաբերությունների հարցերը՝ թե միմյանց և թե կենտրոնի հետ:

Անհանգստացնում է, որ նոր լուծումներ որոնելիս երբեմն մոռացության է տրվում մեր հոգածության գլխավոր առարկան՝ ԽՄԿԿ-ի ամբողջականությունը: Մասնավորապես առաջարկություններ են արվում անցնելու ԽՄԿԿ-ի կառուցմանը ըստ ֆեդերատիվ սկզբունքի՝ որպես միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների միության, ԽՄԿԿ-ի կանոնադրության մեջ վավերագրել սուսկ այն իրավունքները, որ կամավոր կերպով կենտրոնին են վերահղվում միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների կողմից:

Առաջարկվում է նախատեսել հանրապետության կոմունիստների շրջանում հանրաքվե անցկացնելու միջոցով ԽՄԿԿ-ից դուրս գալու միութենական հանրապետությունների կոմկուսների իրավունք:

Դժվար չէ պատկերացնել նման նորամուծությունների հետևանքները: Դա կլիներ ԽՄԿԿ-ի բաժանում ըստ ազգային հատկանիշի, ընդ որում անհնար կդառնար միասնական կուսակցական քաղաքականությունը, հասարակության մեջ ԽՄԿԿ-ի միասնացնող, կոորդինացնող ֆունկցիաների իրագործումը, խորհրդային ֆեդերացիան, ԽՍՀ Միությունն ամրապնդելու համատեղ աշխատանքը:

Կանոնադրության հիմքում դրվող նորմաները թույլ են տալիս պահպանել միասնական ԽՄԿԿ-ն: Դրա հետ մեկտեղ դրանք ամրագրում են միութենական հանրապետությունների կոմկուսների նոր կարգավիճակը, որը նրանց համար իրական ինքնուրույնություն է ապահովում ԽՄԿԿ-ի ծրագրի և կանոնադրության շրջանակներում: Այդ ինքնուրույնությունը կիրացվի՝ միութենական հանրապետությունների կոմկուսներին իրավունք տրամադրելով մշակելու սեփական ծրագրային ու նորմատիվ փաստաթղթեր և դրանց համապատասխան լուծելու կազմակերպական, կադրային, հրատարակչական ու ֆինանսական հարցերը, քաղաքական գիծ վարելու իրենց հանրապետությունների զարգացման բոլոր ոլորտներում: Կանոնադրության նախագծով նաև նախատեսված է, որ ԽՄԿԿ Կենտկոմի նախագահության ու հանձնաժողովների սկզբունքային որոշումները, որոնք վերաբերում են միութենական հանրապետությունների կոմկուսներին, պետք է քննարկվեն նրանց լիազոր ներկայացուցիչների մասնակցությամբ, իսկ ընդունված որոշմանը համաձայն չլինելու դեպքում միութենական հանրապետության կոմկուսի կենտկոմը իրավունք ունի պահանջելու, որ ԽՄԿԿ Կենտկոմի պլենում գումարվի վիճելի հարցերը քննարկելու համար:

Կանոնադրության նախագծի հիմքում դրված սկզբունքների և այն խնդիրների լուծման նկատմամբ եղած մոտեցումների կապակցությամբ, որոնք վերաբերում են հանրապետական կոմկուսներին, ծառանում է նաև Ռուսաստանում հանրապետական կուսակցական կազմակերպություն ստեղծելու կարևորագույն հարցը: Հարկ չկա ասելու այն առանձնահատուկ դերի մասին, որ Ռուսաստանը որպես համակարգող հուժկու գործոն կատարում է Միության շրջանակներում, իսկ Ռուսաստանի կոմունիստները՝ ԽՄԿԿ-ի միասնության ու ամբողջականության ապահովման գործում:

Այսօր Ռուսաստանի զգալի թվով մարզային կուսկազմակերպություններում անձնայն վճռականությամբ է դրված ՌԽՖՍՀ-ի կոմկուս ստեղծելու հարցը: Օրինակ, Լենինգրադում հանրաքվեի ընթացքում դրա ստեղծման օգտին է արտահայտվել, ինչպես մեզ տեղեկացրել է կուսակցության Լենինգրադի մարզային կոմիտեն, կոմունիստների 80 տոկոսը: Կարծում եմ, որ այդ հարցը պետք է լուծեն իրենք՝ հանրապետության կոմունիստները:

Նախորդ՝ ընդլայնված պլենումում, ինչպես հիշում եք, մենք պայմանավորվեցինք, որ ՌԽՖՍՀ-ի կուսակցական կազմակերպությունները իրենց ժողովներում և կոնֆերանսներում կքննարկեն այս հարցը, իսկ արդյունքները կամփոփի հանրապետական կուսակցական կոնֆերանսը կուսակցության XXVIII համագումարից առաջ:



Ձեր քննարկմանն է առաջարկվում, ընկերներ, այդ կոնֆերանսն անցկացնել հունիսի 19-ին՝ Մոսկվայում:

Այն վերջնականապես կմշակի ՌԽՖՍՀ-ի կոմունիստների ընդհանուր դիրքորոշումը և կներկայացնի կուսակցության համագումարին: Նկատի առնելով դա, տրամաբանական կլիներ այնտեղ պատվիրակներ չընտրել առանձին, այլ համապատասխան լիազորություններով օժտել ՌԽՖՍՀ-ի կուսակցական կազմակերպություններից ընտրված ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակներին: Նրանք որոշում կընդունեն և այն կիրականացնեն համագումարում:

Մենք այս հարցը հատուկ քննարկման առարկա ենք դարձրել քաղբյուրոյում մի քանի անգամ և Կենտկոմի վերջին պլենումում XXVIII համագումարի առթիվ ներկայացված պլատֆորմի նախագծի քննարկման շրջանակներում: Իհարկե, կարելի է ընթանալ այսպիսի ուղիով, ընտրել ինքնուրույն պատվիրակներ Ռուսաստանի կուսկոնֆերանսի համար, անցկացնել այդ կոնֆերանսը, նրանում մշակել նկատառումներ ու առաջարկություններ կուսակցության XXVIII համագումարում քննարկելու համար: Բայց արդյոք այնպես չի՞ ստացվի, որ Ռուսաստանի կոնֆերանսի պատվիրակները կհավաքվեն, առաջարկություններ կմշակեն, իսկ նրանցից հետո կգան Ռուսաստանի կուսակցական կազմակերպություններից համագումարի պատվիրակները և դեռ հայտնի չէ, թե նրանք արդյոք համաձայն կլինե՞ն նրա հետ, ինչի օգտին արտահայտվել էին Ռուսաստանի կուսկոնֆերանսի պատվիրակները: Եվ կարող է ինչ-որ խառնաշփոթություն ստացվել հաջորդայնության փոխարեն: Ուստի տրամաբանական է այն, ինչ մենք ենք առաջարկում. Ռուսաստանի կուսկազմակերպություններից ընտրված XXVIII համագումարի պատվիրակները համագումարից մի երկու շաբաթ առաջ կհավաքվեն իրենց կոնֆերանսին, իրենք կքննարկեն այդ հարցերը, կմշակեն կոլեկտիվ առաջարկություններ և դրանք կպաշտպանեն համագումարում: Մեզ թվում է, որ քաղբյուրոյի նման դիրքորոշումը խորապես մտածված է, որ այն ճիշտ է:

Նման կոնֆերանսի նախապատրաստումը կարելի էր հանձնարարել ԽՄԿԿ Կենտկոմի Ռուսաստանի բյուրոյին և երկրամասային, մարզային, օկրուգային, Մոսկվայի քաղաքային կուսակցական կազմակերպությունների ներկայացուցիչներից կազմված նախապատրաստական կոմիտեին: Կարծում եմ, որ դա կապահովեր հենց այն, ինչ հարկավոր է:

Կարծում եմ, որ միայն նման մոտեցումը թույլ կտա վերջին ժամանակներս այդ բնագավառում ծագած բոլոր նախաձեռնությունները ամբողջացնել մի միասնական հունի մեջ և արագ ձեռնամուխ լինել այդ մեծ խնդրի կոնստրուկտիվ լուծմանը:

Կանոնադրության նախագծում հանգամանորեն են ձևակերպվում այն դրույթները, որոնք մտցված են կուսակցության բարձրագույն մարմիններին վերաբերող բաժնում:

Դա միանգամայն հասկանալի է: Չէ որ կուսակցության բարձրագույն մարմինների գործունեության կազմակերպման նորմատիվ հիմքը, ի տարբերություն տեղական կուսկազմակերպությունների, միութենական հանրապետական կոմկուսների ղեկավար մարմինների, չի կարելի սահմանել ոչ մի այլ փաստաթղթով, բացի ԽՄԿԿ-ի կանոնադրությունից:

Այս բաժնում նորը նախ և առաջ կուսակցության Կենտրոնական կոմիտեի էլ ավելի լայն գործադիր մարմնի՝ ԽՄԿԿ Կենտկոմի նախագահության հիմնումն է, որի կազմի մեջ պետք է ընտրվեն բանվորների, գյուղացիների, մտավորականության, զինծառայողների, կուսակցության վետերանների ներկայացուցիչներ, ինչպես նաև ըստ պաշտոնի մտնեն միութենական հանրապետությունների կոմկուսների ղեկավարները: Նախագահության անդամների թիվը սահմանում է համագումարը:

Առաջարկվում է ստեղծել Կենտկոմի քարտուղարների կողմից գլխավորող ԽՄԿԿ Կենտկոմի մշտական հանձնաժողովներ, որոնք կոչված են խորապես մշակել կուսակցության գործունեության հարցերը ըստ տարբեր ասպարեզների: Ի տարբերություն ներկայումս գոյություն ունեցող հանձնաժողովների, դրանք օժտվում են իրենց իրավասության հարցերի առնչությամբ որոշումներ կայացնելու իրավունքով:

Առաջարկվում է կուսակցության մեջ մտցնել ԽՄԿԿ-ի նախագահի և նրա տեղակալների պաշտոններ, որոնք ընտրվելու են կուսակցական համագումարի կողմից: Նրանք իրականացնելու են ԽՄԿԿ Կենտկոմի մարմինների աշխատանքի ամենօրյա ընդհանուր ղեկավարումը, ապահովելու են նրա համաձայնեցվածությունն ու արդյունավետությունը:

Այս գաղափարն արդեն դրված է ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի հիմքում, քըն-

նարկվում է կուսկազմակերպություններում: Կոմունիստների շրջանում մի շարք հարցեր են ծագել: Եվ դրանցից մեկը, որի վրա ես կկամենայի կանգ առնել բառացիորեն երկու խոսքով, հետևյալն է. իսկ դա որևէ վնաս չի՞ հասցնի կոլեգիալությանը կուսակցական մարմինների աշխատանքում:

Մեզ թվում է, ընկերներ, որ մենք ճիշտ միտք ենք ձևակերպել: Ինչու՞: Եթե իրատես լինենք և ազնվորեն վերլուծենք, իսկ միայն այդ կերպ կարող ենք վարվել, շատ կոմունիստների տրամադրությունն այնպիսին է, որ կուսակցության հիմնական ղեկավար անձինք կոմունիստների կողմից ընտրվեին ուղղակի: Այդ պատճառով էլ առաջարկություն ծագեց՝ նրանց ընտրել ոչ թե կուսակցական կոմիտեների պլենումներում, այլ հենց կոմունիստների կողմից՝ կուսժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում: Քանի որ կոնֆերանսն... և համագումարների պատվիրակներն ընտրվելու են ըստ կուսակցական օկրուգների, այսինքն անմիջականորեն սկզբնական կազմակերպությունների կողմից, ապա սկզբնական կազմակերպությունների այդ ներկայացուցիչներն էլ կարտահայտեն նրանց կամքը առաջին դեմքերի ընտրության խնդրում:

Բայց եկեք մենք սա քննարկենք: Ինձ թվում է, որ այս գաղափարի հիմքում դրված է կոլեգիալության բարձր մակարդակ, կոմունիստների վերահսկողության ներքո կհայտնվեն կուսակցության գլխավոր դեմքերը՝ սկսած սկզբնական կազմակերպությունից մինչև բարձրագույն աստիճանը:

Պետք է նշել, որ կան նաև որպես ԽՄԿԿ Կենտկոմի մշտական մարմին Կենտկոմի ձևափոխված քարտուղարություն ստեղծելու կողմնակիցներ: Կարծում եմ, որ մեզ հարկավոր է այստեղ՝ պլենումում քննարկել նաև այս հարցը:

Կոմունիստների մի մեծ ջոկատ ծառայում է ԽՍՀՄ զինված ուժերում: Այդտեղ կուսակցական աշխատանքն ունի իր առանձնահատկությունները, որոնք անհրաժեշտ է հաշվի առնել ԽՄԿԿ-ի կանոնադրությունը մշակելիս:

Հեղափոխական վերակառուցման սկզբունքներով որակապես նոր զինված ուժերի կառուցման գործում բանակային կուսակցական կազմակերպությունների և քաղաքական մարմինների դերը բարձրացնելու ուղին անցնում է ամբողջ կուսակցական-քաղաքական աշխատանքի նորացման միջով, զինվորական կոլեկտիվների կյանքի ու գործունեության դեմոկրատացման միջով: Այդ ուղղությամբ պետք է գործեն նաև ԽՄԿԿ-ի կանոնադրության այն նորմաները, որոնք հասցեագրված են բանակային կուսակցական կազմակերպություններին:

Իհարկե, ընկերներ, դա բանակային կառուցվածքների դյուրին վերակառուցում չի լինի, բայց այն հասունացել է և դրան պետք է ձեռնամուխ լինել: Մենք հույս ենք կապում այս շատ կարևոր հարցի շուրջը այստեղ՝ Կենտրոնական կոմիտեի պլենումում կարծիքներ փոխանակելու հետ:

Կուսակցության դեմոկրատացմանը, նրա քաղաքական ու բարոյական նորացմանը կծառայի ԽՄԿԿ կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովի ստեղծումը, որն ընտրվելու է կուսակցական համագումարի կողմից և հաշվետու է լինելու նրան: Կյանքը ցույց տվեց, որ կուսակցական վերահսկողության և վերստուգիչ աշխատանքի ներկայումս գործող համակարգը իրեն սպառել է: Դա մեծապես բացատրվում է նրանով, որ կյանքում և կանոնադրության մեջ վերահսկիչ ու վերստուգիչ մարմիններին երկրորդական դեր է հատկացված: Նրանք օժտված չեն անհրաժեշտ ինքնուրույնությամբ: Տեղերում շատ կուսհանձնաժողովներ զբաղված են հիմնականում կուսակցական կոմիտեների քարտուղարների հանձնարարությունների կատարմամբ, իսկ վերստուգիչ աշխատանքը որպես կանոն իրականացվում է կուսակցական ապարատի ֆինանսա-տնտեսական ստորաբաժանումների ղեկավարությամբ:

Կյանքն ինքն է մեզ հանգեցրել կուսակցական կառուցվածքում ինքնուրույն ընտրովի վերահսկիչ միասնական մարմնի ստեղծման անհրաժեշտությանը կենտրոնում և տեղերում՝ համապատասխան մարմիններում: Դա նախատեսված էր XIX կուսակցական կոնֆերանսի որոշումներով, և այժմ իր արտացոլումն է գտնում ԽՄԿԿ կանոնադրության նախագծում:

Երկյուղներ են հայտնվում, թե նման միջոցառումը կհանգեցնի «երկկենտրոնի» գոյացմանը կուսակցության մեջ: Կենտկոմի քաղբյուրոն, քանիցս քննարկելով այդ հարցը, նմանօրինակ երկյուղները համարում է անհիմն, քանի որ նոր վերահսկիչ մարմինը ղեկավար ֆունկցիաներ չի ունենալու:

Դրա ամբողջ գործունեությունը կկենտրոնանա ԽՄԿԿ-ի ծրագրային փաստաթղթերի և կանոնադրության, համագումարների և կոնֆերանսների որոշումների կատարման, կուսակցական բյուջեի կատարման, կուսակցական կարգապահության և էթիկայի պահպանման, կոմունիստների բողոքարկումների քննարկման վերահսկողության վրա: Կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովը դեմոկրատական դիմագիծ կունենա, կընտրի իրեն հաշվետու գործադիր մարմին՝ նախագահություն և դրա համանախագահներ:



Մենք երևի կկարողանայինք մեզ վրա պատասխանատվություն վերցնել, եկեք խորհրդակցենք, և թույլատրել վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովների ստեղծում շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային, երկրամասային կուսակցական կազմակերպություններում և միութենական հանրապետությունների կոմկուսներում՝ նրանց կոնֆերանսներում ու համագումարներում մինչն ԽՄԿԿ-ի կանոնադրության մեջ համապատասխան փոփոխություններ մտցնելը, այսինքն՝ կուսակցության XXVIII համագումարի նախապատրաստության ժամանակաշրջանում: Փորձի կարգով այդպիսի աշխատանք արդեն տարվում է: Մեր կուտակած փորձի հիման վրա էլ առաջարկություններ են մտցվում ԽՄԿԿ-ի կանոնադրության մեջ:

Կոնֆերանսներում և համագումարներում կարելի էր հաստատել նաև հանձնաժողովների կանոնադրությունները, կողմնորոշվելով դեպի նրանց այն ֆունկցիաները, որ արտացոլված են ԽՄԿԿ-ի նոր կանոնադրության նախագծում, ինչպես նաև ԽՄԿԿ-ի կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովի կանոնադրության նախագծում, որը ներկայացված է մեր պլենումի քննարկմանը: Եթե առարկություններ չլինեն, ապա այս մոտեցումը կարելի է արտացոլել Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշման մեջ:

ԽՄԿԿ-ի դեմոկրատական վերակառուցման իմաստով կանոնադրության նախագծով նախատեսվում են էական փոփոխություններ կուսակցական բյուջեի գոյացման և ծախսման պրակտիկայում: Իրացվում են սկզբնական կուսկազմակերպությունների պահանջները, որոնք ամենուրեք առաջադրվում են ներկայումս. իրենց տնօրինության տակ թողնել իրենց կողմից գանձվող կուսակցական անդամավճարների գումարի մինչև 50 տոկոսը:

Կարծում եմ, որ արդի պայմաններում, երբ կուսկազմակերպությունների գործունեության մեջ երևան են գալիս մի շարք նոր ֆունկցիաներ և քաղաքական ջանքերի գործադրման ոլորտներ, այս միջոցառումը պատեհաժամ ու ճիշտ է:

Կուսակցական կանոնադրության մեջ մտցվում է դրույթ բյուջեի ձևավորման և կուսակցական միջոցների ծախսման հետ կապված բոլոր հարցերի բացահայտ բնույթի մասին: Կուսակցական բյուջեն այսուհետև քննարկվելու և հաստատվելու է ԽՄԿԿ Կենտկոմի պլենումներում, որն այնուհետև հրապարակվելու է:

Կանոնադրության նախագծում առաջարկված է անդամավճարների մուծման նոր սանդղակ: Այն կազմված է՝ հաշվի առնելով կոմունիստների բազմաթիվ առաջարկությունները ու ցանկությունները: Ճիշտ է, դրանց մեջ կար նաև կուսակցության անդամների որոշ կատեգորիաների անդամավճարների մուծումից ազատելու առաջարկություն: Նման քայլը չէր բխի մեր կուսակցական ավանդույթներից: Կարծում եմ, դա նաև չէր հասկացվի կոմունիստների կողմից: Ուստի նախագծով նախատեսված է խորհրդանշական անդամավճար սահմանել որոշ կատեգորիաների համար, դա ըստ երևույթին տվյալ դեպքում հենց այն «ոսկյա միջինն է», որ անհրաժեշտ է:

Ավարտելով կանոնադրության նախագծի մի քանի նոր դրույթների բնութագրումը, կուզենայի ընդգծել, որ այս նորամուծությունները բխում են կուսակցության արդի զարգացման, նրա արմատական նորացման օբյեկտիվ պահանջմունքներից: Դրանք ձևակերպելով կանոնադրության նախագծում, մենք մտադիր ենք կոմունիստների քննարկմանը ներկայացնել մի փաստաթուղթ, որը նպատակամղում է ներկուսակցական հարաբերությունների այդպիսի վերակառուցման և կուսակցության լայն դեմոկրատացումը կմիացնի նրա՝ որպես մեր հասարակության ավանգարդային ուժի, կազմակերպվածության ու գործունակության մեծացման հետ:

Ընկերներ, թույլ տվեք նաև անդրադառնալ համագումարի նախապատրաստության մի քանի հարցերի: Առաջարկություն կա համագումարը հրավիրել 1990 թվականի հուլիսի 2-ին Կրեմլի Համագումարների պալատում:

Համագումարի օրակարգը հաստատվել է ԽՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում: Առաջարկվում է օրակարգը լրացնել «Դեպի մարդկային, դեմոկրատական սոցիալիզմ» ԽՄԿԿ-ի պլատֆորմի մասին հարցով: Կարելի է արդեն այժմ համաձայնության գալ նաև այն մասին, որ Կենտկոմի զեկուցման մեջ շարադրվեն ԽՄԿԿ-ի պլատֆորմի և կանոնադրության նախագծերին առնչվող բոլոր հարցերը: Իհարկե, առաջարկվող օրակարգը չի բացառում, որ համագումարում կարող են ծա-

գել ուրիշ հարցեր, նախաձեռնության կարգով առաջարկված բանաձևերի զանազան նախագծեր:

Մենք պետք է նպաստենք այն բանին, որ համագումարն անցնի ստեղծագործական մթնոլորտում:

Մենք պետք է սահմանենք համագումարում ներկայացուցչության նորման և պատվիրակների ընտրությունների կարգը: ԽՄԿԿ XXVII համագումարի մեկ պատվիրակ ընտրվում էր կուսակցության 3670 անդամներից: Անցած ժամանակաշրջանում կուսակցությունը մեծացել է, 1990 թվականի հունվարի 1-ի դրությամբ կուսակցությունն ուներ 18,8 միլիոն անդամ: Հաշվի առնելով դա՝ առաջարկվում է XXVIII համագումարի մեկ պատվիրակ ընտրել կուսակցության 4 հազար անդամներից: Հաշվումների համաձայն, դա թույլ կտա համագումարում ունենալ մոտավորապես 4700 պատվիրակ:

Պատվիրակների ընտրությունների կարգի վերաբերյալ մենք պետք է ելնենք այն բանից, որ կուսկազմակերպություններին անհրաժեշտ է ավելի մեծ ազատություն տալ ինքնուրույնաբար լուծելու իրենց հարցերը, ղեկավարվելով դեմոկրատական նորմաներով:

Շատ կուսկազմակերպություններից, մանավանդ քաղաքային կուսկազմակերպություններից առաջարկություններ են ստացվել համագումարի պատվիրակների ընտրություններն անցկացնել ըստ կուսակցական օկրուգների:

Կան նաև պատվիրակների ընտրության նախկին կարգի կողմնակիցներ, մանավանդ այնտեղ, որտեղ կուսակցական կազմակերպությունները գործում են ընդարձակ տարածքներում: Այս բոլոր հարցերը արծարծվում էին կուսկոմիտեների, քաղկոմների ու շրջկոմների քարտուղարների մի մեծ խմբի հետ կայացած հանդիպման ժամանակ: Նրանց աշխատանքի կոնկրետ պայմանները այնուամենայնիվ իրենց կնիքն են դնում այդ գործում ցույց տրվող մոտեցումների վրա:

Կենտկոմի քաղբյուրոն հնարավոր է համարում կուսակցական կազմակերպություններին իրավունք տալ ինքնուրույնաբար որոշելու, թե ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ընտրությունների ինչպիսի կարգ է իրենց համար ավելի հարմար:

Ճիշտ է, այս առթիվ էլ արդեն կան քննադատական դիտողություններ: Բայց դա արդեն ներկա հասարակական-քաղաքական գործընթացի բնորոշ գիծն է. բոլոր առաջարկությունները այսպես թե այնպես կասկածի տակ են դրվում: Նրանք, ովքեր երեկ առաջարկում էին կուսակցական կազմակերպություններին իրավունք տալ ինքնուրույնաբար որոշելու, թե ինչպես պատվիրակներ ընտրեն, այսօր ասում են, պետք է պլենումի ցուցումներ տալ այն հաշվով, որ տեղական կուսակցական մարմինները չհրամայեն կուսակցական կազմակերպություններին: Մի խոսքով, մենք հաճախ հայտնվում ենք բուխարացի Նասրեդինի վիճակում, երբ նա գնում էր էշի վրա նստած, նրան հայհոյում էին այն բանի համար, որ տանջում է խեղճ կենդանուն, իսկ երբ նա էշին շալակեց, նրան դարձյալ մեղադրեցին. «Ծեր էշը ջահելին է շալակած տանում»:

Մենք պետք է կշռադատենք ամեն ինչ և խելամիտ վճիռ կայացնենք, հաշվի առնելով, որ կուսակցության մեջ իրոք դեմոկրատական ընտրություններ անցկացվեն, որ ընտրվեն կուսակցական կազմակերպությունների այնպիսի ներկայացուցիչներ, որոնք իրենց վրա վերցնեին մեր հասարակության զարգացման և կուսակցության բարենորոգման հարցերը լուծելու պատասխանատվությունը:

Կենտկոմի կուսակցական շինարարության և կադրային քաղաքականության հարցերի հանձնաժողովի առաջարկություններն այդ առթիվ հրապարակվել են, դրանք ամբողջությամբ պաշտպանություն են գտել կոմունիստների կողմից: Կարծում եմ, ճիշտ կլինի, եթե Կենտկոմը այսօր դրանք քննարկի և համապատասխան որոշում ընդունի:

Կուսակցության համագումարին նախապատրաստվելիս պետք է հաշվի առնել կոմունիստների բազմաթիվ ցանկությունները, որոնք պահանջում են, որ այդ աշխատանքը տարվի՝ հենվելով լայն կուսակցական արխիվի վրա:

Հարկավոր է Կենտկոմի պլատֆորմի ու ԽՄԿԿ-ի կանոնադրության նախագծերի շուրջ տեղի ունեցող դիսկուսիաների նյութերի ընդհանրացման և համապատասխան առաջարկությունների մշակման համար Կենտկոմի հանձնաժողովների միջոցով անհապաղ ներգրավել կենտրոնական մարմինների մեջ չմտնող կոմունիստներին, ամենից առաջ սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարներին, տեղական կուսակցական աշխատողներին, գիտնականներին: Կարծում եմ, դա դեմոկրատական կլինի և կհամապատասխանի ժամանակի ոգուն:



Նաև նպատակահարմար է համագումարի պատվիրակների ընտրության համեմատ նրանց թվից ստեղծել աշխատանքային հանձնաժողովներ կամ խմբեր, որոնք պետք է մշակեն ԽՄԿԿ համագումարի հիմնական փաստաթղթերն ու բանաձևերը, համագումարի անցկացման կարգը, նրա նիստերի ռեգլամենտը: Նման մոտեցումը համագումարի նախապատրաստությանը ավելի արդյունավետ և ավելի դեմոկրատական բնույթ կտա:

Հիմա՝ կուսակցության հաշվետու-ընտրական կամպանիայի մասին: Կենտկոմի նախորդ պլենումում քաղբյուրոն, պլենումի մասնակիցները արտահայտվեցին հօգուտ այն բանի, որ համագումարին նախորդեն լիարյուն հաշվետվություններն ու ընտրությունները կուսակցության բոլոր օղակներում, որոնք զուգորդվեն Կենտկոմի պլատֆորմի և ԽՄԿԿ-ի կանոնադրության նախագծերի շուրջ լայն դիսկուսիայի հետ: Սակայն այս տեսակետը ամենուրեք չէ, որ պաշտպանություն գտավ: Մի շարք կուսակցական կոմիտեներ պահանջում են, որ հաշվետվություններն ու ընտրությունները անցկացվեն համագումարից հետո: Կարծում եմ, որ դա հազիվ թե ճիշտ լինի: Եվ ահա թե ինչու:

Ինչպես հայտնի է, մի շարք կուսակցական կազմակերպություններում տիրող դրությունը աչքի է ընկնում անկայունությամբ: Երբեմն միտինգային էմոցիաները բավական էին, որ այս կամ այն մարզում, շրջանում բանը հասներ կուսակցական ղեկավարության պաշտոնանկ անելուն: Բոլոր նրբերանգներով հանդերձ այդ դեպքերի հիմքում ընկած է կուսակցական մարմինների աշխատանքով մարդկանց անբավարարվածությունը: Այդ բանն, ի դեպ, ցույց տվեցին մի շարք վայրերում անցկացված իշխանության հանրապետական և տեղական մարմինների ընտրությունները:

Մի՞թե այս իրադրության մեջ կարելի է խուսափել այն բանից, որ կուսակցության մեջ բոլոր ղեկավար մարմինները՝ սկզբնական կազմակերպության կուսբյուրոյից մինչև ԽՄԿԿ Կենտկոմ, անցնեն հաշվետվությունների և ընտրությունների միջով ու ստանան կոմունիստների վստահության մանդատ: Կարծում եմ, որ իրավիճակը մեզ թելադրում է դրա անհրաժեշտությունը:

Հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում պետք է մանրամասնորեն վերլուծվեն կուսկազմակերպության գործունեության բոլոր կողմերը, ոչ ոք չպետք է խուսափի հաշիվ տալուց, թե ինքն ինչ է արել վերակառուցման համար:

Այլապես համագումարի նախապատրաստությունը չի շոշափի կոմունիստներին, նրանց թույլ չի տա մինչև վերջ հասկանալ կուսակցության բախտի համար պատասխանատվության այն չափը, որ ընկած է յուրաքանչյուրի վրա, ով կուզենար այսուհետև էլ աշխատել նրա շարքերում: Ավելին, այս հանգամանքը թե բուն կուսակցության մեջ և թե ամբողջությամբ վերցրած մեր հասարակության մեջ կարող է ընկալվել որպես «ապարատի խարդավանք», որն ուզում է կոմունիստների առջև հաշիվ տալուց խուսափել դեպի համագումար գնալով:

Սա գործի մի կողմն է: Մյուսն այն է, որ բոլոր մակարդակների կուսակցական մարմինները հիմա առանձնապես թարմ ուժերի, վերակառուցական ֆորմացիայի ղեկավար կադրերի ներհոսի կարիք ունեն, որոնք տիրապետեն աշխատանքի քաղաքական մեթոդներին, զերծ լինեն աչքակապությունից և կազմակերպական հուլությունից, նվիրված լինեն սոցիալիզմի գործին:

Կուսակցությանը, ինչպես երբեք, հարկավոր են քաղաքական մարտիկներ, եռանդուն, համարձակ մարդիկ, որոնք կարողանան հեղաբեկել կուսակցական մարմնի՝ որպես բյուրոկրատական, չինովնիկական ապարատի մասին հասարակական գիտակցության մեջ ստեղծված պատկերացումը:

Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում միայն, կուսակցության մասին, սոցիալիզմի մասին ազնիվ, անկեղծ խոսակցության մթնոլորտում միայն կարող է ձևավորվել պրակտիկ գործողությունների ծրագիր, իսկ համագումարի պատվիրակներ կընտրվեն վերակառուցման իսկական մարտիկներ: Հենվելով հաշվետու-ընտրական կամպանիայի քաղաքական բազմի վրա միայն՝ կարելի է համագումարում ստեղծել իրոք ստեղծագործական, վստահելի մթնոլորտ, թերասացություններից և թաքուն քաղաքական մանևրներից զերծ մթնոլորտ:

Վերջապես, մենք պետք է մինչև համագումարն ունենանք այնպիսի ընտրովի մարմիններ, որոնք կրեին ամբողջ պատասխանատվությունը թե ընդունված որոշումների, այդ թվում համագումարի ընդունած որոշումների համար, և թե դրանց գործնական իրականացման համար: Այդ հիման վրա միայն կուսակցական խոսքը գործից չի բաժանվի:

Հետհամագումարյան ժամանակաշրջանում հաշվետվություններ և ընտրություններ անցկացնելու կողմնակիցներն ասում են, որ առանց ԽՄԿԿ-ի կանոնադրության մեջ համապատասխան փոփոխություններ մտցնելու հնարավոր չէ ընտրել ղեկավար մարմիններ դեմոկրատական, այլընտրական հիման վրա: Բայց ոչինչ չի խանգարում սահմանել այնպիսի կարգ, որը կուսակցական կազմակերպություններին թույլ տա ղեկավար մարմինների ընտրություններ անցկացնել՝ հաշվի առնելով ներքևից արվող առաջարկությունները և այնպես անցկացնել, որ քվեաթերթիկի մեջ մտցվեն ավելի շատ թեկնածուներ, քան մանդատներ կան: Ժողովը, կոնֆերանսը, համագումարը կուսակցական կազմակերպությունների բարձրագույն մարմիններն են, և նրանք իրավունք ունեն ինքնուրույնաբար որոշել, թե ինչպես ընտրեն իրենց ղեկավարներին՝ կոմիտեի պլենումում, թե անմիջականորեն ժողովի, կոնֆերանսի, համագումարի ամբողջ կազմով: Կարծում եմ, որ մեր պլենումը կարող է որոշում ընդունել այդ առթիվ և այդպիսով վերացնել կոմունիստների բոլոր կասկածները:

Կուսակցական կոմիտեները կարող էին իրենք սահմանել հաշվետվությունների և ընտրությունների անցկացման հաջորդականությունը՝ ելնելով նրանից, որ դրանք պետք է ավարտվեն հունիսին:

Այսպիսիք են համագումարի նախապատրաստման կազմակերպական կողմի հետ կապված հիմնական հարցերը:

Ընկերներ:

Կենտկոմի սույն պլենումը նշանավորում է մի բնագիծ, որտեղ ավարտվում է ԽՄԿԿ XXVIII համագումարի նախապատրաստման առաջին փուլը, երբ ընդունվել են հիմնական որոշումները և կուսակցության դատին են ներկայացվում ծրագրային և կանոնադրական փաստաթղթեր: Նոր փուլում պետք է ծավալել նախահամագումարյան նախագծերի համակուսակցական, համաժողովրդական քննարկումը, յուրաքանչյուր կոմունիստի մասնակից դարձնել արմատական կուսակցական հարցերի լուծմանը:

Վստահ եմ, որ այդ նախագծերում ձևակերպված գաղափարները, առաջարկությունները, հետաքրքրությամբ և ըմբռնումով կընկալվեն կոմունիստների կողմից, լավ հիմք կծառայեն հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում լուրջ խոսակցություն ծավալելու հրատապ գործերի, մեր երկրի ապագայի, երկրի հեռանկարների մասին խոսակցություն ծավալելու համար:

---

# ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի 1990 թվականի մարտի 16-ի ՈՐՈՇՈՒՄԸ

## ԽՄԿԿ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ, ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԿԱՄՊԱՆԻԱՅԻ ԱՆՑԿԱՑՄԱՆ ԺԱՄԿԵՏՆԵՐԻ, ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉՈՒԹՅԱՆ ՆՈՐՄԱՅԻ ԵՎ ՊԱՏՎԻՐԱԿՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

*1. Ի փոփոխումն ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի սեպտեմբերյան պլենումի որոշման, Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության հերթական XXVIII համագումարը հրավիրել 1990 թվականի հուլիսի 2-ին, Մոսկվա քաղաքում, Կրեմլի համագումարների պալատում։*

*2. Համագումարի քննարկմանը դնել հետևյալ հարցերը.*

*1) Վերակառուցման ընթացքը և կուսակցության խնդիրները։ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը։ Զեկուցող՝ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչով։*

*2) ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի զեկուցումը։ Զեկուցող՝ ԽՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահի տեղակալ ընկ. Ա. Ա. Նիզովցևա։*



*3) «Դեպի մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմ» ԽՄԿԿ-ի պլատֆորմի մասին։*

*4) ԽՄԿԿ կանոնադրության մասին։*

*5) ԽՄԿԿ կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովի կանոնադրության մասին։*

*6) Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ։*

*Նպատակահարմար գտնել, որ ԽՄԿԿ-ի պլատֆորմի ու կանոնադրության հետ առնչված հարցերը շարադրված լինեն առաջին հարցի վերաբերյալ զեկուցման մեջ։*

*3. ԽՄԿԿ XXVIII համագումարի ներկայացուցչության նորման սահմանել մեկ պատվիրակ կուսակցության 4 հազար անդամից։*

*4. Անհրաժեշտ համարել ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ընտրություններն անցկացնել դեմոկրատական լայն հիման վրա, մրցակցության ու այլընտրանքության մթնոլորտում, բոլոր կոմունիստների անմիջական մասնակցությամբ։*

*Ընդունել ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ընտրության կարգի վերաբերյալ այն առաջարկությունները, որ ԽՄԿԿ Կենտկոմի կուսակցության շինարարության ու կադրային քաղաքականության հարցերի հանձնաժողովը մշակել է կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների և անկուսակցականների առաջարկությունների հիման վրա (կցվում են)։*

*Ընդունված կարգի համաձայն ընտրված պատվիրակների ցուցակները ձևակերպում և ԽՄԿԿ XXVIII համագումարին են ներկայացնում մարզային ու երկրամասային կուսակցական կոնֆերանսները, միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների համագումարները, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի և Ղազախստանի կոմունիստական կուսակցություններում՝ մարզային կուսակցական կոնֆերանսները, Մոսկվա քաղաքում՝ ԽՄԿԿ շրջանային կոնֆերանսները։*

*Խորհրդային բանակի, ռազմածովային նավատորմի, ներքին ու սահմանապահ զորքերի կուսակցական կազմակերպությունների անդամ կոմունիստները ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակներին ընտրում են համապատասխան միավորումների, զորատեսակների և զինված ուժերի տեսակների կուսակցական կոնֆերանսներում։*

*Արտասահմանում գտնվող խորհրդային հիմնարկների կուսակցական կազմակերպությունների անդամ կոմունիստները ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակներին ընտրում են իրենց կուսակցական կոնֆերանսում, որն անցկացվելու է Մոսկվա քաղաքում։*

*5. Կուսակցական կազմակերպություններում հաշվետու-ընտրական կամպանիայի անցկացման կարգն ու ժամկետները սահմանում են միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, ՌԽՖՍՀ-ում՝ ԽՄԿԿ երկրկոմները, մարզկոմները։*

*Քաղաքային (շրջանային կուսակցական կառուցվածք ունեցող քաղաքներում), օկրուգային, մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսներում, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում պատվիրակների ընտրությունների կարգը որոշում են համապատասխան կուսակցական կոմիտեների պլենումները։ Հանձնարարական տալ կոնֆերանսներում և համագումարներում պատվիրակների ընտրության և կուսակցական մարմինների կազմավորման ընթացքում օգտագործել ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ընտրության համար սույն որոշմամբ սահմանված մոտեցումները և ԽՄԿԿ-ի նոր կանոնադրության նախագծի դրույթները։*

*6. Կոնֆերանսներում և համագումարներում պատվիրակների, ինչպես նաև ղեկավար կուսակցական մարմինների ընտրությունների դեմոկրատացման նպատակով սահմանել՝*

*Ընտրված են համարվում մյուս թեկնածուների համեմատությամբ առավել շատ քվեներ, բայց ժողովին մասնակցած ԽՄԿԿ անդամների, կոնֆերանսին, համագումարին մասնակցած պատվիրակների, կուսակցական կոմիտեի կամ ընտրովի այլ մարմնի անդամների առնվազն կեսի քվեներն ստացած թեկնածուները։*

Համապատասխան կուսակցական կազմակերպության կամ կոմունիստական կուսակցության բարձրագույն մարմինը հանդիսացող կուսակցական ժողովը, կոնֆերանսը, համագումարը իրավունք ունեն կուսակցական կոմիտեի առաջին քարտուղարի (քարտուղարի) կամ ընտրովի այլ անձի ընտրության հարցը լուծել ժողովի, կոնֆերանսի կամ համագումարի ամբողջ կազմով։ Ընդ որում սահմանվում է հետագայում տվյալ ընտրովի անձին փոխելու կարգը։

Այս դրույթներով առաջնորդվել մինչև ԽՄԿԿ-ի նոր կանոնադրության ընդունումը։

7. Հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում խորապես և համակողմանիորեն քննարկել կուսակցական կազմակերպություններում տիրող վիճակը, կուսակցական աշխատանքի արմատական բարելավման միջոցառումները, կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի, ԽՄԿԿ կանոնադրության նախագծերը։ Կարևոր է, որ հաշվետվությունները և ընտրությունները, կուսակցության համագումարի ողջ նախապատրաստությունը հնարավորություն ընձեռեն ի հայտ բերելու կոմունիստների տարբեր տեսակետները, որ դրանք անցկացվեն ցանկացած կարծիքի նկատմամբ, իր դիրքորոշումն արտահայտելու փոքրամասնության իրավունքի նկատմամբ հարգալից վերաբերմունքի ոգով։

Անհրաժեշտ է ապահովել ժողովների, կոնֆերանսների ու համագումարների կոնստրուկտիվ բնույթը, հասարակության մեջ կուսակցության դերն ու գործունեությունը, նրա ներքին կյանքը դեմոկրատացնելու, կուսակցական ղանգվածի իշխանություն հաստատելու արմատական հարցերի վերաբերյալ առաջարկությունների կոլեկտիվ մշակումը։

ԽՄԿԿ XXVIII համագումարի նախապատրաստությունը պետք է նպաստի կոմունիստների գաղափարական ու կազմակերպական համախմբմանը, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության գործունակության բարձրացմանը, հասարակության մեջ ԽՄԿԿ-ի ավանգարդային դերի ամրապնդմանը, նրա ակտիվացմանը վերակառուցման խորացման խնդիրների լուծման գործում։

Պետք է հատուկ ուշադրություն դարձնել այն բանին, որ կուսակցական աշխատանքի մեջ նոր, թարմ ուժեր ներգրավվեն վերակառուցման գործին նվիրված, կուսակցական կազմակերպությունների պաշտպանությունը վայելող, կուսակցական քաղաքական մեթոդներին տիրապետող կոմունիստները, կուսակցության մեջ ղեկավար դերի առաջ քաշվեն այնպիսիները, ովքեր ընդունակ են գործուն բնույթ հաղորդել ԽՄԿԿ-ի նորացմանը կուսակցության XXVIII համագումարի որոշումների հիման վրա։

8. 19-րդ համամիութենական կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթներին համապատասխան, առաջիկա կուսակցական համագումարներում, կոնֆերանսներում կարող են ընտրվել վերահսկիչ-վերստուգիչ միասնական հանձնաժողովներ։ Մինչև ԽՄԿԿ XXVIII համագումար իրենց գործնական աշխատանքում վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողովները կարող են առաջնորդվել ԽՄԿԿ Կենտկոմի հաստատած ժամանակավոր կանոնադրությամբ։ («Իզվեստիա ցեկա կապեէսէս», № 1, 1989 թ.)։

9. ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարել ԽՄԿԿ XXVIII համագումարի նախապատրաստության հետ կապված աշխատանքն անցկացնել, լայնորեն մասնակից դարձնելով ԽՄԿԿ Կենտկոմի անդամներին ու անդամության թեկնածուներին, տեղական կուսակցական ակտիվին, հրապարակայնորեն և բացախոս կերպով։ Նպատակահարմար գտնել համագումարի համար ընտրված պատվիրակներից ստեղծել ԽՄԿԿ համագումարի հիմնական փաստաթղթերի ու բանաձևերի մշակման հանձնաժողովներ (խմբեր)։

---



# ԼԵՆԻՆԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ նոր իմաստ ու բովանդակություն են ստանում Լենինի կյանքն ու գործը, նրա մըշտապես նորացող ու զարգացող ուսմունքը։ Հիրավի, Լենինը կուռք չէ, նա ժողովրդի հոգսերով ապրող, նրա բարգավաճմանն իր ողջ էությունը նվիրաբերած հեղափոխական մտածող է։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ մարդկության առաջընթացի համար շատ պայծառ դեմքեր են հանդես եկել, որոնք անջնջելի հետք են թողել սերունդների տարեգրքում, բայց այն, ինչ ձեռնարկեց Վ. Ի. Լենինը, դժվար է սովորական չափանիշներով արժեքավորել։

Լենինի բացառիկությունն այն է, որ մարդկային ամենահանդուգն մտահղացումները, սոցիալական ծրագրերը նա փորձեց իրականություն դարձնել, և հասարակական կյանքի ամենատարբեր բնագավառներում լենինյան հետևությունները ու եզրահանգումները ծլարձակեցին, արմատավորվեցին, նոր լիցք հաղորդեցին բանվորական շարժմանն ու հեղափոխական պայքարին։

Մենք հոկտեմբերի հետ ենք կապում անցած 72 տարում մեր երկրում և աշխարհում տեղի ունեցած մեծագույն առաջադիմական վերափոխումները և կապում ենք լիակատար հիմունքով։ Սակայն մեր ժամանակը միանշանակ չէ, նրանում ի մի են ձուլվել հաղթանակներն ու անհաջողությունները, հայտնագործություններն ու սխալները, լուսավորն ու ողբերգականը։ Մենք չենք կարող հրաժարվել մեր պատմությունից, որի մեջ են խորհրդային ժողովրդի այսօրվա բազում պրոբլեմների ակունքները։ Կուսակցությունը հիմա սթափ գնահատում և արժեքավորում է Հոկտեմբերի ուղիով, Լենինի դրոշով անցած մեր ճանապարհի ամեն մի հատվածն ու շրջափուլը։ Բայց դա մեզ իրավունք չի վերապահում ժխտողական վերաբերմունք ցուցաբերելու մեր տարեգրության նույնիսկ այնպիսի էջերի նկատմամբ, որոնք ողբերգական են, դրամատիկ։ Մենք չենք կարող չհուզվել, նույնիսկ ծանր պահեր չապրել այն կոռուստների, այն անմարդկային պայմանների համար, որոնք հաղթահարեցին մեր ժողովուրդը, ավագ սերունդները։ Մենք ժխտում ենք «նպատակը արդարացնում է միջոցները» ճիզվիտական սկզբունքը։ Բայց չմոռանանք և այն իրողությունը, որ սոցիալական հեղաշրջումներն ու հեղափոխությունները չեն կատարվում և դեղատոմսային ճշգրտությամբ չեն իրականացվում։ Հեղափոխության դիալեկտիկական տարընթացը պրոցեսների միագումար է, որտեղ միահյուսվում են հակադիր ուժեր ու նպատակներ, որ շատ հաճախ դժվար է կռահել պայքարի ելքը։

Մենք խորին հարգանք ենք տածում հեղափոխական ռոմանտիկների նկատմամբ, որոնք պատմության շրջադարձային պահերին փորձում էին «երկինքը գրոհել»։ Հեղափոխական ընդվզումի մեր ժամանակների փայլուն օրինակ է Չե Գևարայի ու նրա զինակիցների սխրանքը... Լատինաամերիկյան

ՍԻՄՈՆՅԱՆ ԱՐԱՄ ՍԻՄՈՆԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր, փիլիսոփայական գիտությունների թեկնածու։

հեղափոխականների պայքարը, սակայն, կրկին հաստատեց, որ հեղափոխությունը չի արտահանվում, այն ամեն մի երկրի ներքին զարգացման արդյունք է, սոցիալական հակամարտությունների արգասիք։

Այսօր գիտական ու պարբերական գրականության մեջ շատ է վիճարկվում մեր դարի ռուսական հեղափոխությունների բնույթը, հատկապես փետրվարյան ու Հոկտեմբերյան հեղափոխությունների նկարագիրը, նրանց հորձանուտում ներգրավված ուժերի դիմագիծը։ Սրանք սոսկ փիլիսոփայական վերլուծություններ չեն, այլ օրգանապես շաղախվում են Խորհրդային Միության այսօրվա խնդիրների, մեր կառուցած սոցիալիստական հասարակարգում տեղ գտած բարդ երևույթների, աշխարհում կատարվող սոցիալական պրոցեսների դրսևորումների հետ։

Մեր ժամանակներում ի հայտ են եկել պրոբլեմներ, որոնք անցյալում կամ չեն եղել և, հետևաբար, չէին կարող մարքսիզմ-լենինիզմի դասականների վերլուծության առարկա լինել, կամ էլ գոյություն են ունեցել սաղմնային վիճակում։ Լրջորեն փոխվել է կապիտալիստական սեփականության բնույթը, փոխվել նրա կառուցվածքը՝ արտադրության միջազգայնացման և ամբողջությամբ վերցրած կապիտալիստական տնտեսության տարազգայնացման պատճառով։ Ներկայումս գլոբալ պրոբլեմներն այն աստիճան են սրվել, որ առանց դրանց անկարելի է իրատեսական պատկերացում կազմել հասարակական զարգացման ժամանակակից միտումների, մարդկության ապագայի մասին։

Նկատենք նաև, որ մարքսիզմի հիմնադիրները երբեք չեն զբաղվել նոր հասարակության զարգացման կոնկրետ ձևերի ու մեխանիզմների հայտնաբերումով։ Ավելին, նրանք սոցիալիստական գաղափարը մշակել են հենվելով իրական հասարակական կյանքի, իրենց ժամանակի հեղափոխական բանվորական շարժման պրակտիկայի վրա։ Ապացուցել են կապիտալիզմի պատմականորեն անցողիկ բնույթը և հանգել հասարակական զարգացման նոր աստիճանի անցնելու եզրահանգման։ Միաժամանակ աշխատել են հեղափոխական սոցիալական ուժերին տալ հանուն սոցիալիզմի պայքարի տեսականորեն հիմնավորված կարգախոսը։ Մարքսիզմի դասականների աշխատություններում տրված է հասարակական զարգացման միտումների սոսկ ընդհանուր տեսական մոդելը, որը ծառայում է սոցիալական պրակտիկայի ճանաչման և վերափոխման հուսալի կողմնորոշիչ։ Իսկ ինչ վերաբերում է կապիտալիզմին փոխարինելու եկող ապագա հասարակության կառուցվածքին, ապա այդ առթիվ ասվել է լոկ ամենաընդհանուր ձևով և գլխավորապես՝ դրա հիմնական սկզբունքների տեսակետից։

Պարզ է, սակայն, որ մարքսիզմի հիմնադիրների ստեղծած տեսությունն ընդհանուր ոչինչ չունի անհատի պաշտամունքի ու լճացման տարիներին տեղ գտած սոցիալիզմի ձևախեղումների, այս կամ այն քաղաքական գործչի սխալ գործողությունների հետ։ Ասենք նաև. ոչ միայն այն պատճառով, որ տեսությունն այդ իրադարձություններից բաժանված է հարյուրամյա ժամանակահատվածով, այլ ըստ գործի էության։ Այսպես, հայտնի է, որ ապրանքային արտադրության նկատմամբ մեզանում տասնամյակներով արմատացած բացասական վերաբերմունքը անմիջականորեն բխում է Մարքսի այն դիտողությունից, թե մասնավոր սեփականությունից հանրային սեփականության անցնելուց հետո արժեքի օրենքը կորցնում է արտադրության կարգավորիչը լինելու կարողությունը։ Մինչդեռ Մարքսը ապրանքային արտադրության հաղթահարումը առնչում էր ոչ միայն հանրային սեփականության, այլև արտադրողական ուժերի զարգացման բարձրագույն մակարդակի հետ։ Արտադրողական ուժերի զարգացման այդպիսի մակարդակը բնականաբար բնորոշ է նոր ֆորմացիայի ոչ թե վաղ աստիճաններին, որտեղ մենք այժմ գտնվում ենք, այլ դրա հեռավոր ապագային։ Հիշենք, որ ռազմական կոմունիզմի ժամանակաշրջանում մեր ավերված երկրին պարտադրում էինք ապրանքադրամական հարաբերություններից հրաժարում և անցում ուղղակի մթերափոխանակման՝ ամենաանհրաժեշտի համատարած պակասի պայմաններում։ Տակավին ուսումնասիրության կարիք ունի, թե ինչու է անուշադիր մնացել Վ. Ի. Լենինի գնահատականը, որը սխալ է համարել անմիջական ապրանքափոխանակման միջոցով սոցիալիզմ հաստատելու ռազմական կոմունիզմի ժամանակաշրջանի



առաջին փորձերը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 44, էջ 188—189, 231—232, 245)։

Ելնելով արդի աշխարհի սթափ վերլուծությունից, կարելի է նկատել, որ Մարքսը թերագնահատել է կապիտալիզմի ինքնազարգացման հնարավորությունները, որը կարողացավ յուրացնել գիտատեխնիկական հեղաշրջման նվաճումները։ Զարգացած կապիտալիստական երկրներում այժմ կազմավորվել են հասարակական-տնտեսական այնպիսի կառուցվածքներ, որոնք ապահովեցին այդ հասարակարգի կենսունակությունը, հնարավորություն ընձեռեցին ստեղծելու բնակչության մեծամասնության կենսամակարդակի համեմատաբար բարձր աստիճան, ինչը, հիրավի, չի վերացնում նրա ներքին խոր հակասությունները։

Ճիշտ է, Մարքսը առաջինն էր, որ տեսավ գիտատեխնիկական զարգացման, գիտությունն անմիջական արտադրողական ու սոցիալական ուժի վերածման հսկայական ներունակությունը։ Սակայն նա չկռահեց, որ գալիք գիտատեխնիկական հեղաշրջումը կարող է դառնալ կապիտալիզմի զարգացման նոր աղբյուր։ Հարկ է նկատել, որ Մարքսը միայն կանխատեսել է XIX դարի, իր ապրած ժամանակաշրջանի կապիտալիզմի զարգացման հնարավորությունները։ Նա չէր պատկերացնում երկրների խոշոր խմբերում երկու սոցիալական սիստեմների երկարատև գոյակցությունը, որը կապիտալիզմին մղեց ինքնակատարելագործման, սոցիալ-տնտեսական ոլորտում սոցիալիստական փորձի նշանակալից տարրերի յուրացման, քաղաքական կարգերի դեմոկրատացման։ Այս պարագաները կապիտալիզմին հնարավորություն ընձեռեցին ձեռք բերելու լրացուցիչ ուժեր, ինչպես նաև հարմարվելու ժամանակի մարտահրավերներին։

Արդ, խորամուխ լինելով սեփական պատմության ծալքերում, առավել ակնհայտ է դառնում, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը սխալ գործողություն չէր։ Ոչ միայն այն պատճառով, որ դրա իրական այլընտրանքը ամենևին էլ բուրժուական դեմոկրատական հեղափոխությունը չէր, ինչպես որ ոմանք այսօր փորձում են հավատացնել, այլ անարխիական խռովությունը և զինվորականության արյունալի դիկտատուրան, հետադիմական, հակաժողովրդական վարչակարգի հաստատումը։ Կասկած չի հարուցում և այն իրողությունը, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը ոչ թե պատահականություն էր, այլ համաշխարհային պատմական օրինաչափ առաջընթաց։ Այն հասարակական պրոբլեմները հանուն ժողովրդի լուծելու, նյութական ու հոգևոր բարձրագույն առաջադիմության պայմաններ ստեղծելու, աշխատավորության ամբողջ զանգվածին սոցիալական գիտակցական ստեղծագործության պրոցեսի մեջ ընդգրկելու պահանջ էր։

Երկրի կյանքում սոցիալիստական գաղափարի իրականացման առաջին փորձնական քննությունը դարձան հետհոկտեմբերյան տարիները։ Այդ ժամանակ սկսվեց հասարակության կազմակերպման կոնկրետ ձևերի ինտենսիվ որոնում։ Դրա վկայությունն են Վ. Ի. Լենինի աշխատությունները, սկսած «Խորհրդային իշխանության հերթական խնդիրները» նրա ծրագրային աշխատությունից։ Հայտնի է, որ Ստալինի սերմանած դոգմատիկ դրույթների ազդեցության տակ, որոնք նրանից հետո էլ երկար ապրեցին, թերագնահատվել է Վ. Ի. Լենինի հետհոկտեմբերյան աշխատությունների որոնողական բնույթը, քողարկվել են սոցիալիզմի կառուցման նրա հայացքների փոփոխությունները, որովհետև դրանք իբր կարող էին գնահատվել որպես թուլություն։ Այնտեղ իրականում լենինյան որոնումը ոչ թե թուլության, այլ ուժի արտահայտություն է։ Իրադարձությունների հորձանուտում, բուռն անցքերի ժամանակ Լենինը կարողանում էր սովորել կյանքից, զգայուն կերպով որսալ աշխատավոր զանգվածների պահանջմունքները, ընդհանրացնել փաստերը և տեսական հետևություններ անել հասարակության մեջ կատարվող պրոցեսներից։

Լայնորեն տարածված էր այն մտայնությունը, թե Լենինն իբր ունեցել է մեր երկրում սոցիալիզմի կառուցման ավարտուն ծրագիր։ Իրականում նման ավարտուն ծրագիր չի եղել։ Հեղափոխության առաջին տարիներին շեշտը դրվում էր ուղղակի բաշխման վրա, աշխատանքի՝ որպես պարտականության, ինչպես նաև խիստ հաշվառման ու վերահսկողության վրա, միջոցառումներ,

տական ուղու ընտրության մեջ, ոչ թե հեղափոխության ուղիների, այլ նրա հիմքերի, նրա սկզբունքների մեջ։ Կուսակցությունն այսօր նույնպես անդրադառնում է, հետադարձ հայացք ձգում հեղափոխության ակունքներին ու սկզբունքներին ոչ թե ժխտելու ու պսակազերծելու առումով, այլ լիովին կրելու պատասխանատվությունը հեղափոխության գործի համար, նրա խոստումների, մեծագործությունների, թույլ տրված սխալների, բացթողումների ու պարտքերի համար։

Կուսակցության նախաձեռնած հեղափոխական վերակառուցումն ամբողջական պրոցես է, որն իրականացվում է ժողովրդի կողմից դեմոկրատական մեթոդներով։ Վերակառուցման մինչև այսօր ունեցած ամենակարևոր արդյունքը պասիվությունից, անտարբերությունից հասարակության ձերբազատումն է, որի շնորհիվ միլիոնավոր խորհրդային մարդիկ քաղաքացիական արժանապատվություն են գտել և իրենց ձեռքն են առնում պետության կառավարումը։ Տեղի է ունենում նոր տնտեսական, քաղաքական կառուցվածքների ձևավորման պրոցես։ Դա նույնպես նպաստավոր միջավայր է ստեղծում ժողովրդի ակտիվության, կյանքի բոլոր ոլորտներում վերակառուցման ընթացքի ծավալման ու խորացման համար։ Ընթանալով վերակառուցման ուղիով, ակներև է դառնում այն իրողությունը, որ երկիրն ախտահարած ճգնաժամը շատ ավելի խոր ու լուրջ է, քան կարելի էր ենթադրել։ Դուրս են ժայթքել հասարակական օրգանիզմի ընդերքում տասնամյակներով կուտակված պրոբլեմներ ու հակասություններ։ Փաստ է, որ վերակառուցման ընթացքում հնարավոր չեղավ խուսափել վրիպումներից ու սխալներից։ Դա նույնպես բարդացրեց իրադրությունը։ Առկա վիճակին բնորոշ են սոցիալական լարվածությունն ու տագնապը։ Երևան են եկել անտարբերության ու հիասթափության տարրեր։ Նման պայմաններում բացառված չէ արկածախնդրական միտումների դրսևորում, աշխատավորների սոցիալական անբավարարվածության, իրական պրոբլեմների շահարկում։ Ահա թե ինչու այժմ կենսականորեն անհրաժեշտ է հասարակության բոլոր առողջ ուժերը համախմբել հեղափոխական վերափոխումների նպատակների ու խնդիրների շուրջը։

Գլխավորը, ինչն այսօր հուզում է կոմունիստներին, երկրի բոլոր քաղաքացիներին, վերակառուցման ապագան է, երկրի, ԽՄԿԿ-ի բախտը՝ հեղափոխական վերափոխումների ամենապատասխանատու շրջանում։ Խորհրդային հասարակության արդի փուլում կուսակցությունն իր քաղաքականությունը հարստացնում է վերակառուցման ընթացքում կատարված փոփոխությունների ու ծագած պրոբլեմների իմաստավորումով։ Ինչպես ասվեց ԽՄԿԿ Կենտկոմի փետրվարյան (1990 թ.) պլենումում, այստեղ դանդաղումը հղի է հապաղումով, նախաձեռնության կորստով, որն անխուսափելիորեն կազդեր թե՛ հենց ԽՄԿԿ-ի վրա, թե՛ նրա սկսած հեղափոխական վերափոխումների ճակատագրի վրա։

Կուսակցությունը քաղաքական ավանգարդի առաքելությունը կկարողանա կատարել, եթե ինքն արմատապես վերակառուցվի, տիրապետի ժամանակակից պայմաններում քաղաքական աշխատանքի արվեստին, կարողանա հաջողությամբ գործակցել վերակառուցման բոլոր ուժերի հետ։ Այո՛, կուսակցության նորացման արմատական հարցն այն ամենից մաքրվելու անհրաժեշտությունն է, ինչը նրան շաղկապել է ավտորիտար բյուրոկրատական համակարգի հետ, համակարգ, որն իր կնիքն է դրել ոչ միայն աշխատանքի մեթոդների, կուսակցության ներքին փոխհարաբերությունների վրա, այլև գաղափարախոսության, մտածելակերպի, սոցիալիզմի վերաբերյալ բուն պատկերացումների վրա։

Կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում հստակորեն նշված է, թե ինչից մենք պետք է հրաժարվենք. տասնամյակների ընթացքում արմատացած գաղափարախոսական դոգմատիզմից, ներքին քաղաքականության մեջ իրենց սպառած ստերեոտիպերից և համաշխարհային հեղափոխական պրոցեսի, ամբողջ համաշխարհային զարգացման նկատմամբ եղած հնացած հայացքներից, այն ամենից, ինչը հանգեցրել է համաշխարհային քաղաքակրթության ընդհանուր հոսանքում սոցիալիստական երկրների մեկուսացմանը, սոցիալապես այլ աշխարհի հետ մշտական առճակատման ձևով առաջադիմության ուղիների ըմբռնման բացառմանը։



Այսօր կուսակցությունը հրապարակավ հրաժարվում է նախապես կազմված սխեմայով սոցիալիզմ կառուցելու հնարավորության ընձեռումից, որը սահմանափակում է մասսաների կենդանի ստեղծագործության շրջանակները։ Կուսակցությունը նորացվող հասարակության մեջ կարող է գոյություն ունենալ և ավանգարդի իր դերը կատարել միայն որպես դեմոկրատորեն ճանաչված ուժ։ Դա նշանակում է, որ նրա դիրքը չպետք է պարտադրվի սահմանադրական օրինականացման միջոցով։ ԽՄԿԿ-ն, իհարկե, մտադիր է պայքարել կառավարողի դիրքի համար, բայց դա անել խստիվ դեմոկրատական պրոցեսի շրջանակներում՝ հրաժարվելով որևէ իրավական ու քաղաքական առավելությունից։ Կուսակցությունն առաջարկում է իր ծրագիրը, պաշտպանելով այն բանավեճերում, համագործակցելով մյուս հասարակական-քաղաքական ուժերի հետ, մշտապես աշխատելով զանգվածների շրջանում, ապրելով նրանց շահերով ու կարծիքներով։

Խորհրդային հասարակությունում այժմ տեղի ունեցող լայն դեմոկրատացումն ուղեկցվում է քաղաքական պլյուրալիզմի ծավալմամբ, առաջ են գալիս տարբեր հասարակական, քաղաքական կազմակերպություններ ու շարժումներ։ Չի բացառվում նաև նոր կուսակցությունների կազմավորումը։ Հաշվի առնելով ստեղծվող հանգամանքները՝ ԽՄԿԿ-ն ի վիճակի է համագործակցելու և երկխոսություն վարելու բոլոր այն կազմակերպությունների հետ, որոնք գործում են ԽՍՀՄ սահմանադրության շրջանակներում՝ հավատարիմ նրանում վավերագրված հասարակարգին։ ԽՄԿԿ-ն պատրաստ է ներկա բեկումնային շրջանում միասնականացնող դեր կատարել՝ ապահովելով վերակառուցման առաջընթացն ի բարօրություն ամբողջ ժողովրդի։

Խորհրդային հասարակության զարգացման ներկա փուլում կուսակցության նորացումը ենթադրում է նրա խոր, համապարփակ դեմոկրատացում, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի վերաիմաստավորում՝ շեշտը դնելով դեմոկրատիզմի, կուսակցական զանգվածների իշխանության վրա։ Նման ձեռնարկումը կնպաստի կուսակցության ամրապնդմանը որպես ամբողջական կազմակերպություն, կբարձրացնի նրա հեղինակությունը ժողովրդի մեջ։

Հարկ է նկատել, որ կուսակցության մեջ վերակառուցումն առայժմ ավելի դանդաղ է ընթանում, քան ամբողջությամբ վերցրած հասարակության մեջ, ինչը էական դժվարություններ է ստեղծում նրա ավանգարդային դերն ապահովելու ասպարեզում։ Այս առնչությամբ նոր պայմաններին են համապատասխանեցվելու կուսակցական ապարատի կառուցվածքն ու ֆունկցիաները, վերակառուցվելու է կուսակցության բոլոր օղակների գործունեությունը։

Կուսակցության նորացումը ենթադրում է սկզբունքային փոփոխություն պետական ու տնտեսական մարմինների հետ նրա հարաբերություններում, նրանց հրամայելու և նրանց գործառույթներն իր վրա վերցնելու պրակտիկայից հրաժարում։ Կուսակցությունը չպետք է իրեն վերապահի իշխանության պետական լիազորությունների մենաշնորհը։ Նրա դերն է, ասված է պլատֆորմի նախագծում, լինել դեմոկրատաբար ճանաչված քաղաքական ղեկավար, որը գործում է կոմունիստների միջոցով, չհավակնելով առավելության և առանձնահատուկ դիրքի ամրագրման ԽՍՀՄ սահմանադրության մեջ։ Այս առումով կուսակցությունն անհրաժեշտ է համարում օրենսդրական նախաձեռնության կարգով երկրի հիմնական օրենքի վեցերորդ հոդվածի վերաբերյալ համապատասխան առաջարկություն ներկայացնել ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումար։

Բնականաբար հարց է ծագում. ու՞ր ենք գնում, ի՞նչ իմաստ ենք դնում սոցիալիզմի նոր դիմագիծ հասկացության մեջ։ Այստեղ հարկ է հիշել Կ. Մարքսի թևավոր միտքը, թե կոմունիզմը իդեալ չէ, այլ բուն հասարակության իրական շարժումը, որը վերացնում է նրա նախկին վիճակը։ Մոռանալով այս հիմնադրույթի տարողունակ գաղափարը՝ տասնամյակներ շարունակ մեզանում ջանքերը կենտրոնացվում էին ապագայի ինչ-որ իդեալական «նմուշակերտի» նկարագրման վրա, որին հարմարեցվում էին հասարակության մեջ տեղի ունեցող փոփոխությունները։ Ընդսմին, վերացական ուրվագիծը իրականությանն էր պարտադրվում ոչ միայն տեսության մեջ, այլև գործնականում։ Չնայած գաղափարախոսական ապարդյուն ջանքերին, կյանքն ընթանում էր այլ ուղիով՝ օբյեկտիվորեն ստեղծվող պայմաններին համապատասխան։ Նման ի-

րավիճակում հոգևոր կյանքում իշխող էին դոգմատիզմը, գաղափարախոսական անողոքությունը, ներփակությունը, ինքնախաբեությունը, բռնացումը մարդկանց ու պատմության նկատմամբ։

Անկեղծորեն խոստովանենք, որ ժողովուրդը հոգնել է սպասումներից։ Նամանավանդ այնքան շատ են եղել չիրականացված կարգախոսներն ու խոստումները։ **Վերջիններս** չէին իջնում մամուլի էջերից, եթեր տրվող հաղորդումներից, սակայն դրանք քիչ էին ամրապնդվում նյութական ռեսուրսներով, իրական գործերով։ Ցավալի է այն իրողությունը, որ դառնալով մեծ տերություն, մեր երկիրը ժողովրդական զանգվածների համար չստեղծեց այնպիսի կենսապայմաններ, որոնք բնական են ամեն մի քաղաքակիրթ պետության համար։

Վերակառուցումը կոչված է վերացնելու միակողմանի զարգացման այս տարօրինակությունը։ Կարևոր է գործնականորեն նորացնել սոցիալիզմը, ստեղծել սոցիալ-տնտեսական ու քաղաքական այնպիսի կառուցվածքներ, որոնք միջոց են դառնում, իսկ մարդը՝ նպատակ, ապահովելով սոցիալական համակարգի շրջադարձը դեմքով դեպի մարդը։ Հասարակական կառուցվածքների մարդայնացումը ոչ միայն բխում է հումանիզմի կամ բարոյական գերապատվությունների պահանջներից, այլև այսօր դառնում է խորհրդային հասարակության տնտեսական ու սոցիալական զարգացման հրամայականը։

Մարդուն իրականում պետական ու հասարակական գործերի մեջ ներգրավելը հնարավորություն է ընձեռում հաղթահարելու անհատի օտարումը, ընդհանուր և անձնական շահերի խզումը, բարձրացնելու նրա ակտիվությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։

Այստեղ կարևոր է և այն հանգամանքը, որ հասարակության առաջընթացը պայմանավորվում է նաև անհատի անձնական ներդրումով։ Հասարակությունն այնքան ավելի բուռն կզարգանա, որքան անհատն առավել լիովին կդրսևորի իրեն աշխատանքում, կխորանա մասնագիտության մեջ, կհարստացնի իր ստեղծարար ունակությունները։ Այս առնչությամբ նկատենք, որ մարդու համար արված ներդրումները կապիտալի ամենաշահեկան կիրառումն է։ Մինչդեռ մեր երկիրը հետ է մնացել զարգացած պետություններից, որտեղ ժողովրդական կրթության, առողջապահության և մարդու սպասարկման մյուս ոլորտների բաժինն իր տեսակարար կշռով ազգային եկամտի մեջ շատ ավելի բարձր է, քան մեզանում։ Անհրաժեշտ է արմատական շրջադարձ ոչ թե խոսքով, այլ իրոք հրաժարում այդ ոլորտների ֆինանսավորման մնացորդային սկզբունքից, քանի որ միայն նման մոտեցումն է համապատասխանում սոցիալիզմի բուն էությանը։ Սոցիալիզմի նոր դիմագիծը սահմանելիս հարկավոր է մինչև վերջ իրականացնել մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտների մարդկային չափանիշի գերակայության սկզբունքը։

Վերակառուցումը տևական հեղափոխական պրոցես է, որն ընդգրկում է մեր կյանքի բոլոր կողմերը։ Սակայն չմոռանանք, որ այն առաջին հերթին սկսվում է հենց մարդուց՝ Որքանով ենք պատրաստ վերափոխելու մեր «ես»-ը, մեր ներաշխարհը, վերաբերմունքը շրջապատի նկատմամբ։ Հիշենք, որ դաստիարակության ամենադժվարին և ոչ միշտ պատշաճ արժեքավորվող ձևը ինքնադաստիարակությունն է, երբ անհատը, հաղթահարելով իրեն, հասարակության դիրքից ելնելով փորձում է վերափոխել սեփական բնությունը։ Խորհրդային հասարակության հումանիզացման արդի փուլում առանձնապես կարևորվում է անհատի հոգևոր հարստացման եղանակների ու միջոցների բարոյագեղագիտական ու սոցիալ-հոգեբանական վերլուծությունն ու հիմնավորումը։ Այսօր չենք կարող չասել, որ չնայած գիտական միտքը թափանցել է տիեզերքի խորքերը, սակայն նույն մարդն իրեն ինչպես հարկն է չի ուսումնասիրել։ Հավանաբար դա է պատճառը, որ աշխարհի մեծանուն գիտնականների կանխատեսմամբ XXI դարը մարդաբանության ու հոգեբանության դարն է լինելու։

Վերակառուցումը ստիպեց նորովի քննել ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմը։ Այս առնչությամբ իր ողջ հասակով հառնում է Վ. Ի. Լենինի՝ ազգային հարցի խորագիտակ տեսաբանի, անզուգական կերպարը։ Չնայած այդ պրոբլեմին նվիրված բազմաթիվ հրապարակումներում մեջբերումներ են կատարվում լենինյան աստյթներից, բայց դեռևս չկան ամբողջական մենա-



գրություններ, որտեղ հանգամանորեն վերլուծված լինեն Լենինի հարուստ ժառանգությունը ազգային հարաբերությունների վերաբերյալ։ Հարկ է առանձնակի անդրադառնալ արդի պայմաններում ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքին։ Անցած տասնամյակներում այստեղ թույլ են տրվել զգալի խեղաթյուրումներ, դրանք տեղ են գտել նաև հասարակական գիտակցության մեջ։ Վերակառուցումը հասարակական կյանքի մակերես դուրս բերեց ազգամիջյան հարաբերությունների ոլորտում բազում պրոբլեմներ ու հակասություններ։ Դրանք սաղմնավորվել էին այն ժամանակ, երբ անտեսվում էր ազգային հիմունքը, իսկ «ազգային հարցը» պաշտոնապես հայտարարված էր լուծված։

Անժխտելի է, որ ազգային ոլորտում գոյություն ունեն իրական, ոչ մտացածին պրոբլեմներ, դրանք լուծումներ են սպասում վերակառուցման ճանապարհին։ Հրատապ հարց է Միության և հանրապետությունների իրավասությունների սահմանազատումը, գործնականում նրանց քաղաքական ու տնտեսական ինքնուրույնության ամրապնդումը, ազգային ինքնավարությունների իրավունքների ընդլայնումը։ Անհրաժեշտ է նաև արագորեն իրականացնել բոլոր լեզուների ու մշակույթների ներդաշնակ զարգացման կոմպլեքսային միջոցառումները։ Այդ ձեռնարկումների իրագործման շնորհիվ մարդիկ իրականում կտեսնեն խորհրդային նոր ֆեդերացիայի առավելությունները։

Խորհրդային հասարակության դեմոկրատացման պրոցեսում, ազգերի
ինքնորոշման իրավունքի լենինյան սկզբունքի հետևողական կիրառման հար-
ցում առանձնահատուկ տեղ է գրավում Լեռնային Ղարաբաղի Ինքնավար
մարզի պրոբլեմը։ Համառոտակի ասենք, որ 1918—1920 թթ. Արցախը չէր
մտնում մուսավաթական Ադրբեջանի կազմի մեջ։ Իսկ ցարական Ռուսաստա-
նում վարչատարածքային բաժանումը կատարված չէր ըստ էթնիկական հատ-
կանիշի։ Մինչև 1918 թվականի մայիսը, այսինքն մինչև անդրկովկասյան
սեյմի լուծարքի ենթարկվելը, Լեռնային Ղարաբաղը և Զանգեզուրը մտնում
էին Ելիզավետպոլի նահանգի, իսկ Նախիջևանի գավառը՝ Երևանի նահանգի
մեջ։ Եթե վերցնելու լինենք ավելի վաղ շրջան, ապա ադրբեջանցիները պետա-
կանություն չեն ունեցել ու հետևաբար խոսք չէր կարող լինել Լեռնային Ղա-
րաբաղը նրանց պատկանելու վերաբերյալ։ Հիշենք նաև 1920 թվականի նո-
յեմբերի 30-ի Ադրբեջանի հեղկոմի շնորհավորական հեռագիրը Հայաստանի
հեղկոմին, ուր մասնավորապես ասված է, որ այսօրվանից վերացվում են
սահմանների վերաբերյալ բոլոր վեճերը Հայաստանի ու Ադրբեջանի միջև։
Լեռնային Ղարաբաղը, Զանգեզուրն ու Նախիջևանը համարվում են Հայկական
Սոցիալիստական Հանրապետության մասը։ Սակայն դեպքերի ընթացքը
փոխվեց. խորհրդա-թուրքական պայմանագրով և Ստալինի անձնական մի-
ջամտությամբ Նախիջևանն ու Արցախը բռնակցվեցին Ադրբեջանին։ Տարի-
ներ ի վեր արցախցիները պայքարել են այդ անարդարության դեմ։ Վերակա-
ռուցման ու սոցիալիստական հասարակության դեմոկրատացման պրոցեսով
ոգևորված, արցախցիները որոշեցին վերջնականորեն վերամիավորվել մայր
հայրենիքի՝ խորհրդային Հայաստանի հետ։

Այսպիսով, ԼՂԻՄ-ի հարցը տարածքային վեճ չէ։ Այդ հարցն առաջադրել
է ոչ թե Հայաստանը, այլ հենց Լեռնային Ղարաբաղի բնակչությունը, և դրա
էությունը ժողովրդի ինքնորոշումն է։ Նկատենք, որ պրոբլեմի լուծման քա-
ղաքական ուղիների որոնումից սկսեցին առաջ անցնել ուրիշ պրոցեսներ։
Սումգայիթում հայերի զանգվածային ջարդերը ինքնավար կազմավորման և
միութենական հանրապետության փոխհարաբերությունների հարցը վերածե-
ցին ազգամիջյան կոնֆլիկտի։ Իսկ Հայաստանի տնտեսական շրջափակումը
ազգամիջյան կոնֆլիկտը վերածեց միջհանրապետական կոնֆլիկտի։ Սում-
գայիթյան հանցագործությանը ժամանակին քաղաքական գնահատական տա-
լը կարևոր էր ոչ միայն հայ ժողովրդի կամ հենց իր՝ ադրբեջանական ժողո-
վրդի համար։ Ավելին, այդ գնահատականի կարիքն ունեին մեր ամբողջ
հասարակությունը, պետությունը։ Սումգայիթի հետևանքը եղավ այն, որ մեր
կյանքը մուտք գործեց մի աննախադեպ երևույթ՝ գաղթականներ խաղաղ
ժամանակներում, 300 հազարից ավելի հայեր ստիպված եղան հեռանալ Ա-
դրբեջանից և 157 հազար ադրբեջանցիներ՝ Հայաստանից։ Սումգայիթյան
ոճրագործությունները շարունակվեցին Բաքվի հունվարյան ջարդով ու տեղա-

հանությամբ, որոնք, հիրավի, XX դարի սկզբին երիտթուրքերի՝ հայ ժողովրդի նկատմամբ գործադրած ցեղասպանության շարունակությունն են։ Այո՛, դրանք մարդու և մարդկայնության հանդեպ գործված աններելի հանցանք են, որոնք պետք է դատապարտվեն համայն մարդկության կողմից։

Դժվար է բացատրել այն իրողությունը, երբ Հայաստանում և Ադրբեջանում տեղի ունեցած դեպքերի միջև հավասարության նշան են դնում, ինչպես որ համառորեն անում են մասսայական ինֆորմացիայի որոշ միջոցներ՝ մոլորության մեջ գցելով հասարակական կարծիքը։ Ջնայած առկա պրոցեսների ողջ փոխկապակցվածությանը, չի կարելի չտեսնել, որ դրանք էականորեն տարբերվում են իրարից։

Անհնար է հարևանների միջև որևէ կոնֆլիկտով կամ զուտ ազգային հատկանիշով բացատրել ու արդարացնել Բաքվում, Նախիջևանում, Լենքորանում և այլ վայրերում կատարված ցեղասպանությունը, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, խորհուրդների զավթումը, հարյուրավոր կիլոմետրերով ԽՍՀՄ պետական սահմանի ավերումը։ Կասկած չի հարուցում, որ Լեռնային Ղարաբաղի շուրջ կրքերի բորբոքումը սոսկ ծխածածկույթ էր որոշակի ուժերի համար, որոնք օրինական կառավարությունը տապալելու հեռուն գնացող նպատակ էին հետապնդում։

Դժվար է բացատրել մեր հարևանների թույլ տված անմարդկային արարքների դրդապատճառը, անբարոյականության ողջ համալիրը։ Իրոք, այն, ինչ տեղի ունեցավ, ցնցեց մեր ժողովրդին։ Նորից երևաց հազարավոր գաղթականների արդեն երրորդ ալիքը։ Բարդացավ իրավիճակը սահմանամերձ շրջաններում։ Ուժեղացավ Հայաստանի շրջափակումը, որը ձմռան ամիսներին հյուծեց նրա էներգետիկ, հումքային ու պարենային ռեսուրսները։ Ամենուրեք, ներառյալ երկրաշարժի գոտին, կազմալուծված է կյանքը։ Ի պատիվ հանրապետական կուսակցական կազմակերպության, պետք է ասել, որ այդ վերին աստիճանի շիկացած մթնոլորտում թույլ չտրվեց հույզերի պոռթկում, մեծ ճիգերի գնով վերահսկվեց պայթյունավտանգ իրադրությունը։

Հանրապետությունը շրջափակման պատճառով արդեն ամիսներ շարունակ փաստորեն գտնվում էր պաշարման մեջ։ Ջախողված էր հանրապետությունում և նրանից դուրս կատարվող մատակարարումների ծրագիրը։ Դա անվստահություն է ծնել միութենական մակարդակով ընդունված որոշումների նկատմամբ, խթանել կենտրոնի դեմ ուղղված տրամադրությունները։ Դրանք անշուշտ բարդացնում են կուսակցական ու խորհրդային մարմինների աշխատանքը։ Ճիշտ է նաև, որ ժողովրդի ծանր հոգեվիճակի պայմաններում ամեն ինչ չէ, որ հաջողվում էր վերահսկել։ Այսպես, Բաքվում տեղի ունեցած եռօրյա ջարդերը, հարձակումները հայկական բնակավայրերի վրա, Երևանից ընդամենը մի քանի տասնյակ կիլոմետր հեռավորության վրա փաստորեն անպաշտպան մնացած պետական սահմանը, հանրապետությունը հատող շրջաններում հարևանների սպառազեն ջոկատների մեծ ուժերի կուտակումը իրավապահ մարմինների համար անհնարին դարձրին զենքի գրավման դեպքերը կանխելը։ Բնավ չարդարացնելով այդ հակաօրինական գործողությունները, որոնց կապակցությամբ դատախազական մարմինները քրեական գործ են հարուցել, հարկ է տեսնել ողջ ճշմարտությունը։ Այստեղ, անշուշտ, ավելի շատ գործել է ժողովրդի պատմական դառը փորձով և այսօրվա իրողություններով թելադրված ինքնապաշտպանության բնական մղումը։ Իրականում, երբ մարդիկ զգացին, որ բանակը պաշտպանում է իրենց, նրանք սկսեցին ակտիվորեն աջակցել զինվորականների գործողություններին, սկսվեց հափշտակված զենքի կամավոր հանձնումը։

Այս դժվարագույն պայմաններում հաջողվել է հանրապետության կուսակցական ու պետական կառուցվածքների բոլոր օղակների աշխատանքը նպատակամղել մարդկանց մեջ վաղվա օրվա հանդեպ հավատի վերականգնմանը, թույլ չտալ քաոս և կազմալուծում, կանխել գործադուլները, միութենական մարմինների օգնությամբ կարգավորել բնակչության կենսապահովումը։ Ստեղծված իրավիճակում ժողովրդի հավաքական բանականությունը, իմաստնությունն ու զսպվածությունն ավելի հուսալի և կայուն գտնվեցին, քան այսրոպեական հույզերն ու պոռթկումները։ Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ծայրահեղականներին չեն նույնացնում ադրբեջանական ժողովրդի հետ և հանդես են գալիս հանրապետությունների երկխոսության, ճգնաժամից դուրս գալու փոխընդունելի ուղիների որոնման օգտին։ Ստեղծված իրադրության պայմաններում հետագա առճակատումը կանխելու իրական ուղին Լեռնային Ղարաբաղը ժամանակավորապես կենտրոնին ենթարկելն է։

Ազգային քաղաքականության իր պլատֆորմում ԽՄԿԿ-ն, ելնելով ազգայինի և ինտերնացիոնալիստականի դիալեկտիկայի արդիական ըմբռնումից, ջանացել է առավելագույնս արտացոլել այն ամենայն արժեքավորը, ինչը հնչել էր հասարակական բանավեճերի ժամանակ, ներկայացնել խորհրդային ֆեդերացիայի նոր դիմագիծը, որը ազգային սուվերենության ու զարգացման շահերը ներդաշնակորեն զուգակցում է երկրի ժողովուրդների ընդհանուր շահերի հետ։ Նրա շրջանակներում ազգամիջյան հարաբերությունները չեն կարող չկառուցվել դեմոկրատիայի և ժողովուրդների իրավահավասարության, փոխադարձ հարգանքի և ազատ զարգացման հիմունքներով։

Վ. Ի. Լենինը անչափ անհանգստանում էր մարդ արարածի ճակատագրով։ Նա շատ էր մտահոգվում այն իրողությամբ, որ հասարակական վերափոխումները կարծես ավելի արագ են կատարվում երկրների, պետությունների մասշտաբներով, քան անհատի ներաշխարհում։ Նա սիրում էր կրկնել այն իմաստնությունը, որ կուլտուրայի տարածման չափանիշը ոչ թե լուսավորչական հաստատությունների աճն է, այլ այն, թե որքանով են բարեկրթության ու բարոյականության նորմերը դարձել խառնվածք, սովորույթ։ Հիրավի, մեծ աղետը, որ պատեց մեր ազգին, ողջ մարդկության մեջ արթնացրեց մարդկային, գթասրտությունը։

Ջանտեսելով այսօրվա աշխարհի սոցիալ-քաղաքական կառուցվածքը, իրողություն է սակայն, որ համամարդկային զգացումները չեն խամրել, նրանք ծլարձակում են։ Դրա հուսալի երաշխիքներից է մեր կուսակցության լենինյան կուրսը, որը վերակառուցման ժամանակաշրջանում ողջ աշխարհին ներկայանում է իր անդրդվելի վճռականությամբ։ Մենք ի վիճակի ենք ինքնամաքրմամբ ու ինքնակատարելագործմամբ Հոկտեմբերի հայրենիքը դարձնելու սոցիալական արդարության ու դեմոկրատիայի կատարյալ հասարակություն։

---

## Կուսակցական աշխատանքի պրակտիկա

# ՆՈՐԻ ԴԺՎԱՐԻՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

**Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

ԽՄԿԿ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ առթիվ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան (1990 թ.) պլենումի ընդունած պլատֆորմի նախագծում անչափ կարևորվում է երկրում տնտեսական ռեֆորմի խորացման անհրաժեշտությունը: Ըստ էության, դա բխում է համամիութենական կուսակցական XIX կոնֆերանսի այն եզրահանգումից, թե «Հասարակության դեմոկրատացման հետ միասին արմատական տնտեսական ռեֆորմը մեր ամբողջ վերակառուցման հիմքն է»: Պլատֆորմի նախագծում նշվում է, որ դրա հետ անխզելիորեն կապված է ընթացիկ և հեռանկարային սոցիալ-տնտեսական հիմնահարցերի լուծումը: Հետևաբար, կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ պարտքն է՝ լուրջ հետևություններ անել արմատական տնտեսական ռեֆորմի վերաբերյալ կուսակցության արդի պահանջներից, իրենց գործունեությունը ծավալել դրանց համընթաց:

Տնտեսական ռեֆորմի պահանջներից մեկը տնտեսավարման և աշխատանքի կազմակերպման նոր եղանակների ներդրումն ու արմատավորումն է, որը, անտարակույս, կդառնա խորհրդային մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման հաստատուն երաշխիք: Այդ միտումով առաջնորդվելով՝ կուսակցության Մասիսի շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, արդյունաբերության և գյուղատնտեսության ոլորտի աշխատողները այսօր ավելի հստակ են պատկերացնում իրենց խնդիրներն ու պարտականությունները: Մեր նպատակն է զարգացնել այնպիսի տնտեսական լծակներ, որոնք հնարավորություն ընձեռեն արտադրության մարդկանց՝ ակտիվորեն մասնակցելու արդյունաբերության ու գյուղատնտեսության գործերի կառավարմանը, իրենց զգալու որպես ձեռնարկության ու հողի իրական տեր, պայքարելու ծախսած միջոցներից արագ ու շատ հատույց ստանալու համար: Այդ առումով էլ մենք լուրջ ուշադրություն ենք նվիրում արդյունաբերության և գյուղատնտեսության ոլորտներում կուտակված պրոբլեմների լուծմանը, դրանցում տնտեսական ռեֆորմից բխող նորույթների լայն ներդրմանը:

Դեռևս 1988 թվականից շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասն անցել է տնտեսավարման նոր պայմաններին, որոնք ներառում են լրիվ տնտհաշվարկը, ինքնածախսածածկումը և ինքնաֆինանսավորումը: Այժմ արդեն գործող բոլոր 12 ձեռնարկություններն էլ աշխատում են տնտհաշվարկի եղանակով: Նորույթների կիրառման շնորհիվ զգալիորեն բարձրացել են աշխատանքի արտադրողականությունը և մարդկանց շահագրգռությունը վերջնական արդյունքի նկատմամբ:

Շահերի կառավարում, շահերի միջոցով կառավարման լայն դեմոկրատացում, մարդկային գործոնի ըստ ամենայնի ակտիվացում— այս սկզբունքն է այժմ գտնվում շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության հիմքում: Պրոբլեմի հաղթահարումը մենք տեսնում ենք տնտեսավարման նոր պայմաններում կուսկազմակերպությունների աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման մեջ: Այսպես, շրջանի բոլոր հիմնարկ-ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունները ժողովներում քննարկել են գլխավոր մասնագետների, տնտեսագետների հաշվետվություններն ու հաղորդումները այդ ասպարեզում կատարած աշխատանքի մասին, վերանայել տնտեսական ու սոցիալական զարգացման հնարավորությունները, ակտիվացրել գործունեությունը տնտեսավարման նոր պայմաններում աշխատավորների տնտեսագիտական կրթության մակարդակը բարձրացնելու համար:

Քննարկվող հարցի առնչությամբ ցայտուն է Այնթապի ժանյակե վարագույրների ֆաբրիկայի օրինակը: Այս ձեռնարկությունը հանրապետությունում առաջիններից մեկն անցավ ինքնաֆինանսավորման, և արդյունքը շոշափելի է: Անցյալ տարի նրա կոլեկտիվը պայմանագրային պարտավորությունները կատարեց 100 տոկոսով, տվեց աշխատանքի արտադրողականության 14 տոկոս աճ, ստացավ 537 հազար ռուբլու գերպլանային օգուտ: Բնականաբար, այստեղ հաջողությամբ են լուծվում նաև աշխատավորների սոցիալ-կենցաղային հարցերը: Վերջերս շրջկոմի բյուրոն քննարկեց և հաստատեց ֆաբրիկայի սոցիալ-տնտեսական զարգացման միջոցառումների պլանը: Բյուրոն միաժամանակ հանձնարարեց շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններին՝ ուսումնասիրել և արմատավորել այնթապցիների առաջավոր փորձը: Նոր տնտեսական մեխանիզմը սկսել է կիրառվել նաև շրջանի մյուս արդյունաբերական ձեռնարկություններում:

Սակայն ամենալավատեսներն անգամ չեն կարող չխոստովանել, որ արմատական տնտեսական ռեֆորմը ճանապարհ է հարթում մեծագույն դժվարություններով, հաղթահարում պահպանողականության ստերեոտիպերն ու բյուրոկրատական խութերը, բախվում նորի ծննդի հետ առնչվող բազում հակասությունների: Եվ, բնականաբար, շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները ոչ միայն վերանայեցին իրենց հնարավորություններն ու գործողությունների ծրագիրը, այլև ձեռնարկեցին կտրուկ, համարձակ քայլեր նորի արմատավորման ճանապարհին: Խոսքս վերաբերում է հատկապես գյուղատնտեսական արտադրության բնագավառին: Առաջին հերթին առաջ քաշվեց այն խնդիրը, որ տնտեսությունների՝ հրաման տալու սովոր ղեկավարներն ու մասնագետները, որոնք երազում են այդպես էլ շարունակել, պետք է որակապես փոխեն իրենց աշխատանքի ոճը, առաջին պլան մղեն արտադրական և տեխնոլոգիական ֆունկցիաների կատարումը, տիրապետեն տնտեսավարման նոր մեթոդներին, յուրացնեն աշխատանքի կազմակերպման տնտեսագիտական, դեմոկրատական ձևերը: Այդ կապակցությամբ դեռևս 1987-ին շրջկոմի բյուրոն լսեց ԾԱԱՄ-ի խորհրդի նախագահի տեղակալ Հ. Հովսեփյանի հաշվետվությունը, այնուհետև հրավիրվեց սեմինար-խորհրդակցություն, որին մասնակցեցին հիմնարկ-ձեռնարկությունների, տնտեսությունների ղեկավարներ, մասնագետներ, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ: Էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման, տնտեսավարման նոր պայմաններին անցնելու անհրաժեշտության վերաբերյալ պարզաբանումներով հանդես եկան հանրապետության մի շարք առաջատար մասնագետներ:

Մեր շրջանային կուսկազմակերպությունը համամիտ է ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծի այն հետևությանը, որ այսօրվա սուր հիմնահարցը բնակչության պարենավորման ապահովումն է և որ դրա լուծման հիմքը պետք է դառնա հողի վրա տնտեսավարելու բոլոր ձևերի զարգացումը (միատեսակ հնարավորություններ պետք է ունենան պետական, կոոպերատիվ, անհատական տնտեսությունները, տնտեսավարման բազմապիսի ձևերը՝ կապալային, վարձակալական, ընտանեկան և այլն): Այս խնդրի լուծման կապակցությամբ կուսակցությունը ելնում է այն իրողությունից, որ տնտեսական ռեֆորմը աներևակայելի է առանց սեփականության հարաբերությունների խոր վերակառուցման:

Պլատֆորմում պետական սեփականությունը աշխատավորների կողմից դեմոկրատաբար կառավարվող սեփականության արդիական ձևերի վերափոխելը համարվում է կարևոր խնդիր: Ընդ որում, պահանջվում է հաշվի առնել արտադրության մասշտաբները, ռեգիոնների առանձնահատկությունը, միասնական կապերի զարգացածությունը: Եվ այսօր մենք միանշանակ կարծիքի ենք. հողի վարձակալումը այն միակ ուղին է, որը հնարավորություն կտա կարճ ժամանակամիջոցում վերելքի ուղի դուրս բերել ոչ միայն ագրարային հատվածը, այլև առհասարակ մեր ոչ այնքան նախանձելի էկոնոմիկան: Ի դեպ, ճիշտ է ասված, որ վարձակալման այս կամ այն ձևը պետք է ներդրվի կոնկրետ ռեգիոնի, ես կասեի, անգամ առանձին շրջանի, գյուղախմբի, նույնիսկ առանձին գյուղի սոցիալական պայմաններից ելնելով:

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԱԼԲԵՐՏ ՎԱՂԻՆԱԿԻ— ՀԿԿ Մասիսի շրջկոմի առաջին քարտուղար*

Վերն արծարծված խնդիրների առնչությամբ էլ կուզեի պարզել, թե ինչպիսի նկարագիր ունի մեր շրջանի էկոնոմիկան: Բնակչության բնական և մեխանիկական աճի պայմաններում (վերջին երկու տարում, ավելացնենք նաև Ադրբեջանից բռնագաղթվածների կտրուկ հոսքը) աստիճանաբար նվազել են գյուղատնտեսական մթերքների, հատկապես բանջարեղենի ու խաղողի արտադրության ծավալները, իջել է հեկտարի բերքատվությունը: Այսպես, տասներկուերորդ հնգամյակի անցած տարիներին, տասներորդ հնգամյակի միջին տարեկան ցուցանիշների համեմատությամբ, բանջարեղենի արտադրությունը պակասել է 29,4 տոկոսով կամ 13 հազար տոննայով, խաղողինը՝ 13,7 տոկոսով կամ 2.160 տոննայով: Համապատասխանաբար նվազել է ինչպես դրանց, այնպես էլ կարտոֆիլի հեկտարի բերքատվությունը:

Շրջանի տնտեսությունների վերջին երեք տարիների ֆինանսատնտեսական գործունեության արդյունքների վերլուծությունը ցույց է տալիս, որ նրանցից 10-ը աշխատել է մեծ չափի հասնող վնասներով, հինգը՝ 3—9 տոկոս, չորսը՝ 21—26, երկուսը՝ 32—36 տոկոս շահութաբերությամբ: Եթե նրանց փաստացի օգուտները վերջին երեք տարիներին կազմել են մեկ միլիոն 902 հազար ռուբլի, ապա այդ նույն ժամանակամիջոցում միայն պետական տնտեսությունները պետությանը հանձնած մթերքների դիմաց ստացել են շուրջ հինգ միլիոն ռուբլի հավելավճար: Հետևաբար, առանց հավելավճարների գրեթե բոլոր պետտնտեսությունների ֆինանսական գործունեությունը եղել է վնասաբեր:

Նման իրավիճակն ունի և՛ սուբյեկտիվ, և՛ օբյեկտիվ պատճառներ: Մասնավորապես բանջարաբուծության մեջ դեռևս խիստ ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, բարձր է մթերքների ինքնարժեքը: Էլ չենք խոսում գյուղատնտեսական մթերքների գնման գների բարձրացման հրատապության մասին: Անհրաժեշտ է, որ այդ հարցը շուտափույթ քննարկման առարկա դառնա, այլապես շրջանառու միջոցների և մեքենասարքավորումների վաճառքի գների այժմյան թռիչքային աճի պայմաններում դժվար թե հնարավոր լինի ապահովել շահութաբերության այն մակարդակը, որը պահանջվում է ինքնաֆինանսավորման փոխադրված տնտեսություններից:

Կանգ առնեմ մեկ այլ, ըստ իս, նույնպես կարևոր հարցի վրա: Չնայած որ վերջին տարիներին, գյուղատնտեսական մթերքների պետական պատվերները պլանավորելիս, տպավորություն է ստեղծվում, թե դրանք սահմանվում են նորմատիվային մեթոդով, բայց այժմ սոսկ տպավորություն է մնում: Այդ պայմաններում, օրինակ, մեր՝ Մասիսի շրջանի, վարելահողերը անհիմն կերպով դասվում են բարձր կարգի՝ Արարատի, Հոկտեմբերյանի, Էջմիածնի և այլ շրջանների շարքում: Իրականում մեզանում դրանք գերխոնավ են ու կիսաաղուտային և այդ պատճառով էլ՝ սակավ բերքատու: Նման ոչ իրատեսական մոտեցման հետևանքով պլանավորող մարմինները վերևից մեր շրջանի համար սահմանում են եղած հնարավորություններից բարձր պետական պատվերներ՝ այն էլ ըստ տեսականու, մի բան, որ անհանդուրժելի է ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման անցնելու պայմաններում:

Պլանավորման վերոհիշյալ սխալ կարգին եթե ավելացնենք նաև գների ոչ շուկայական կարգավորման համակարգը, որը մեր կարծիքով, նույնպես վերանայման կարոտ է, ապա պարզ կդառնա, թե ինչու են դատարկ վաճառասեղաններն ու մթերային խանութները, ինչու են երկարում ժամերով կանգնած մարդկանց հերթերը: Եվ զուր չէ, որ Կենտկոմի պլատֆորմի նախագծում տնտեսական ռեֆորմի առավել բարդ պրոբլեմը համարվում է տնտեսական գործունեության պլանային և շուկայական մեթոդների կարգավորման օրգանական զուգորդումը: Կուսշրջկոմը, շրջանի կոլեկտիվ ու պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները, անտարակույս, գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի, եղած դժվարությունները հաղթահարելու միակ ուղին տեսնում են տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման, ընտանեկան, վարձակալական և կոլեկտիվ կապալի ազատ ու անկաշկանդ ներդրման մեջ՝ առանց ավելորդ հրամանների ու հրահանգների, առանց վարչահրամայական մեթոդների կիրառման:

Թե ինչպիսի շրջադարձ է ունենում գյուղատնտեսական մթերքների արտադրության գործը մեզանում, ինչպես ենք ներդնում նորն ու առաջավորը, որքանով ենք կենսագործում կուսակցության Կենտկոմի մարտյան (1989 թ.) պլենումի որոշումները, ցույց են տալիս անցյալ տարվա արդյունքները: Բոլորիս հայտնի են 1989-ին



գյուղատնտեսության համար ստեղծված խիստ անբարենպաստ պայմանները (գարնանային ցրտահարություններ, տևական խիստ երաշտ, գյուղատնտեսական մշակաբույսերի, հատկապես պոմիդորի տարածված ու դեռևս չպարզված հիվանդություններ, հայտնի իրադարձությունների կապակցությամբ մարդկանց հոգեբանական անկում, շրջափակում և այլն): Սակայն ձեռնարկված միջոցները և բնակչության շրջանում կուսշրջկոմի ծավալած շերտավորված գաղափարախոսական աշխատանքը արդյունավետ եղան. մարդիկ կարողացան դիմագրավել դժվարություններին և հասնել որոշակի հաջողությունների: Շրջանը գերակատարեց հացահատիկի, կարտոֆիլի և անասնապահական մթերքների պետգնումների պլանային առաջադրանքները: Եվ, որ ամենակարևորն է, շրջանի գրեթե բոլոր տնտեսություններն անցան ինքնաֆինանսավորման ու լրիվ տնտհաշվարկի: 1989 թ. նրանց ընդհանուր օգուտները կազմեցին շուրջ 2 միլիոն 500 հազար ռուբլի: Իհարկե, անհրաժեշտություն չկա խոսել «կտրուկ շրջադարձերի», «աննախադեպ հաջողությունների» մասին, սակայն կարելի է ասել, որ սառույցը հալվում է, գործը՝ տեղից շարժվում:

Կենտկոմի պլատֆորմի նախագծում կարևորվում է գյուղի մարդկանց սոցիալական վիճակի արմատական բարելավումը: Խնդիր է դրվում կարճ ժամանակում նրանց համար ստեղծել բարեկեցիկ կյանքի ապահովման նոր հնարավորություններ: Այդ միտումը կա նաև մեր շրջանում: Մի շարք տնտեսությունների՝ շրջկենտրոնի, Արբաթի, Ղուկասավանի, Գեղանիստի, Այնթապի, Նորաբացի սկզբնական կուսկազմակերպություններն ու ղեկավարները նպատակային աշխատանք են տանում ագրարային հատվածում տնտեսագիտորեն հիմնավորված, արդարացի հարաբերություններ հաստատելու, գյուղի մարդկանց աշխատանքային ու կենցաղային պայմանները բարելավելու համար, մշակում են շրջանի առջև ծառացած ընթացիկ և հեռանկարային խնդիրների լուծումն ապահովող կուսակցական-կազմակերպական և գաղափարաքաղաքական ստրատեգիա ու տակտիկա: Այստեղ այլընտրանք լինել չի կարող. տասներկուերորդ հնգամյակի վերջին տարում գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրությունը 1987-ի համեմատությամբ նախատեսված է ավելացնել 12 տոկոսով, իսկ մեզ լրացուցիչ հողեր չեն տրվելու, երկնքից մանանա չի իջնելու, մենք պետք է մեր նպատակին հասնենք ի հաշիվ նոր տնտեսական ռեֆորմի արմատավորման և գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման:

Հատկապես լավ արդյունք է տալիս աշխատանքի կազմակերպման այնպիսի առաջավոր ձևերի ներդրումը, ինչպիսիք են բրիգադային, ընտանեկան և անհատական վարձակալական կապալը: Անցած երկու տարիներին, օրինակ, շրջկենտրոնի XXII կուսհամագումարի անվան պետտնտեսությունում, որտեղ ներդրվել է բրիգադային կապալը, գրեթե 1,5 անգամ մեծացել են գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալները, մեկ աշխատողի աշխատանքի արտադրողականությունը, 1987-ի 3.433-ի դիմաց, 1989-ին հասել է 6.775 ռուբլու: 1988—89 թթ. տնտեսության օգուտները կազմեցին 1 միլիոն 474 հազար ռուբլի: Դա հնարավորություն ստեղծեց նպատակային ձևով լուծելու բանվոր-ծառայողների սոցիալական հարցերը, բավարարելու նրանց կենսական պահանջմունքները: Արդյունքը երկուստեք էր: Օրինակ, 1989 թ. սոցկուլտմիջոցների հաշվին դաշտում բանվորներին տրվեց շուրջ 25 հազար ռուբլու անվճար սնունդ, որը կրկնակի բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը, նպաստեց նաև քաղաքամերձ շրջանի տնտեսության աշխատուժի պրոբլեմի լուծմանը:

Տնտեսական ռեֆորմի կիրառման, տնտեսավարման և աշխատանքի կազմակերպման նոր եղանակների արմատավորման գործում անուրանալի է բարձրորակ ու բանիմաց կադրերի դերը: Այդ առնչությամբ էլ կուսշրջկոմը իր գործունեության առանցքն է համարում կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավումը, նրանց ճիշտ ընտրությունը: Եթե, օրինակ, շրջկենտրոնի պետտնտեսության նման հզոր տնտեսությունը նախկինում հիվանդագին «կաղում էր» և իր տեսակարար կշռով հետ պահում շրջանի ողջ գյուղատնտեսական արտադրությունը, ապա Ղուկասավանի պետտնտեսությունից հողի լեզուն հասկացող, երկարամյա աշխատանքի փորձ ունեցող Արշավիր Բզնունուն այստեղ որպես դիրեկտոր տեղափոխելուց հետո, վիճակը կտրուկ փոխվեց, կորագիծն աճեց: Անցած երկու տարում տնտեսությունը կատարեց ու գերակատարեց ոչ միայն բանջարեղենի, այլև անասնապահական մթերքների արտադրության ու պետվաճառքի պլանային առաջադրանքները, դարձավ օրինակելի:

Նման կադրային փոփոխություն մենք կատարեցինք նաև Այնթապի պետական տնտեսությունում, որտեղ գործի գլուխ կանգնեց նույնպես փորձված մարդ՝ Սամվել Վարդանյանը: Նա, կարճ ժամանակամիջոցում հրաժարվելով վարչահրամայական մեթոդներից, գործունեության հիմքում դնելով աշխատանքի կազմակերպման նոր, առաջավոր ձևերի ու մեթոդների կիրառումը, տնտեսությունը դուրս բերեց ճգնաժամային վիճակից:

Ինչպես տասնմեկերորդ հնգամյակի, այնպես էլ տասներկուերորդ հնգամյակի առաջին երկու տարիներին (1986—87 թթ.) Այնթապի պետտնտեսությունն աշխատել է մեծ չափերի հասնող վնասներով, ցածր են եղել հեկտարի բերքատվությունն ու անասունների մթերատվությունը: Օրինակ, տասնմեկերորդ հնգամյակում կարտոֆիլի միջին բերքատվությունը հեկտարից կազմել է 84 ցենտներ, 1986 թ.՝ 100, 1987 թ.՝ 76, բանջարեղենինը՝ համապատասխանաբար 117 և 130 ցենտներ: Այս ամենի պատճառը հիմնականում աշխատանքային թույլ կարգապահությունն ու գործի նկատմամբ անտնտեսվար վերաբերմունքն էին: Իհարկե, նման աշխատաոճով հնարավոր չէ շարունակել տնտեսության գործունեությունը: Եվ շուտով միջոցներ ձեռնարկվեցին կադրերի հետ տարվող աշխատանքի մակարդակը բարձրացնելու համար, կատարվեցին որոշ կադրերի փոփոխություններ: Աստիճանաբար ներդրվեցին աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջավոր ձևեր, սկսվեց կատարելագործվել տնտեսական մեխանիզմը: Ահա արդյունքը. 1988 թ. տնտեսությունը ստացավ 359 հազար, հաջորդ տարի՝ 350 հազար ռուբլու օգուտ: Այստեղ կարտոֆիլի բերքատվությունը, 1987 թ. համեմատությամբ, ավելացավ 121, բանջարեղենինը՝ 73 ցենտներով: Լայն տարածում են գտնում վարձակալական հարաբերությունները: Եվ կարևորն այն է, որ գյուղացին նորից վերադառնում է իր պապենական զբաղմունքին, ամուր կապվում հողին, իրեն զգում որպես հողի իսկական սեփականատեր: Խոսենք փաստերով. 1989 թ. անհատական վարձակալներ Կարինե Մանասերյանը, Բորիս Մնեյանը, Սամվել Վարդանյանը, Հրաչ Դավթյանը կարտոֆիլի ցանքադաշտի յուրաքանչյուր հեկտարից ստացել են 225—280 ցենտներ բերք (տնտեսության միջին ցուցանիշը՝ 201 ցենտներ): Ազատ Հովհաննիսյանի և Կարինե Մանասերյանի մոտ բանջարանոցային մշակաբույսերի հեկտարի բերքատվությունը կազմել է 372—375 ցենտներ (տնտեսության միջինը՝ 203 ցենտներ): Ի դեպ, նշեմ, որ տնտեսությունը ինքն է մշակել հողը վարձակալության տալու սեփական ձևը, որը շահավետ է երկուստեք՝ թե տնտեսությանը, որը պլանային առաջադրանքները կատարում է և՛ քանակային, և՛ գումարային արտահայտությամբ, և թե վարձակալին, որը ստանում է մեծ եկամուտ ու բարձր աշխատավարձ: Սա է այն հիմնական պատճառը, որ Այնթապում հետզհետե ստվարանում է վարձակալությամբ աշխատել ցանկացողների շարքը: Անցյալ տարվա 25 արտադրական ստորաբաժանումներից բացի, այս տարվա վարձակալությամբ աշխատելու ցանկություն են հայտնել ևս 110—115 ընտանիքներ: Ինչպես տեսնում ենք, տնտեսական ռեֆորմի իրականացման նորույթների արմատավորման հաջողությունը պայմանավորված է նաև ղեկավար կադրերի բանիմացությամբ, ակտիվ ու խելամիտ գործունեությամբ: Եվ կուսշրջկոմը խրախուսում, սատարում է նրանց, որոնում ու գործադրում այդպիսի մարդկանց ընտրության և առաջքաշման նոր ձևեր ու մեթոդներ: Օրինակ, լայնորեն կիրառում ենք նաև կոլեկտիվներում ազատ և այլընտրանքային ընտրությունների միջոցով նոր կադրերի առաջքաշման սկզբունքը: Թեև նման մոտեցումը դեռևս հղկման կարիք ունի:

Ինչևէ: Վերոհիշյալ բոլոր հանգամանքները վկայում են, որ շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները **գիտակցում են, որ նոր քաղաքականության ելակետը պետք է լինեն գյուղում տնտեսական հարաբերությունների վերակառուցումը,** արտադրության ինքնուրույն վարումը, աշխատանքի կազմակերպման, հողօգտագործման այնպիսի բազմազան ձևերի կիրառումը, որոնք լիակատար ազատություն տան մարդու նախաձեռնությանը, ի հայտ բերեն ստվերում գտնվող թե՛ կադրային, թե՛ արտադրական ռեզերվները: Այդ կապակցությամբ ուսումնասիրելով գործերի իրական վիճակը՝ վերցրել ենք սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի կատարելագործման կուրս: Նրանցից պահանջում ենք ուժեղացնել ազդեցությունը աշխատավորական կոլեկտիվների կյանքի բոլոր կողմերի վրա, պրոպագանդել նորի, առաջավորի արմատավորման շահեկանությունը: Դրա շնորհիվ կոլեկտիվ ու պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները ակտիվացրել են արտադրության մարդկանց հետ տարվող աշխատանքը, նրանց բացատրում են տնտեսավարման մեթոդների ու տնտեսական մեխանիզմի հետագա



կատարելագործման անհրաժեշտությունը, դրանց առավելությունը: Արդյունքը բավարար է. այժմ շրջանի տնտեսություններում գործում է բրիգադային, ընտանեկան և անհատական վարձակալությամբ աշխատող 79 արտադրական ստորաբաժանում:

Նոր տնտեսական քաղաքականության իրականացման հետ ենք կապում մարդկանց սոցիալ-կենցաղային պայմանների բարելավումը՝ դա համարելով մեր առաջնային խնդիրը: Սակայն այդ ասպարեզում մեր պլանները, կանխագծումները հիմնական վերանայման կարիք զգացին հայտնի իրադարձությունների պատճառով, երբ շրջանը ենթարկվեց ժողովրդագրական զգալի փոփոխությունների: Մենք մեր հարկի տակ ընդունեցինք Ադրբեջանից ավելի քան 34 հազար բռնագաղթվածների, որոնց հիմնական մասը քաղաքաբնակ է: Շրջկոմը, շրջանի կուսակցական, տնտեսական ակտիվը իր ուշադրությունը կենտրոնացրեց վերաբնակիչների սոցիալ-կենցաղային կարիքները բավարարելու, գյուղում նրանց համար աշխատանքի ու հանգստի պայմաններ ստեղծելու վրա: Կուսշրջկոմի նախաձեռնությամբ շրջանի վերաբնակեցված ութ գյուղերում անցկացվեցին բաց նամակի օրեր: Մարդիկ հնարավորություն ստացան իրենց հուզող սոցիալ-տնտեսական, կուլտուր-կենցաղային հարցերով ուղղակի դիմել այդ աշխատանքները ղեկավարող անձանց ու նրանցից ստանալ ոչ միայն կոնկրետ ու սպառիչ պատասխաններ, այլև՝ գործնական օգնություն: Դրա շնորհիվ կարճ ժամանակամիջոցում փոխվեց հիշյալ գյուղերի դեմքը. ասֆալտապատվեցին փողոցները, էլեկտրիֆիկացվեցին բնակարանները, կազմվեցին գազապահովման նախագծանախահաշվային փաստաթղթեր:

Սակայն նոր գյուղերի ապագան առաջին հերթին տեսնում ենք արդյունաբե-
րական շրջանների հետ համագործակցության մեջ: Այդ ասպարեզում արդեն ար-
ված է առաջին քայլը, որը շահեկան է թե՛ մեկ, թե՛ մյուս կողմի համար: Բանն այն
է, որ մայրաքաղաքի ամենախոշոր արդյունաբերական Լենինյան շրջանի ձեռնար-
կություններին մենք ապահովում ենք թարմ բանջարեղենով, պարենային այլ ապ-
րանքներով, իսկ նրանք ակտիվորեն ներգրավվել են նորաբնակ գյուղերի սոցիալ-
կենցաղային հարցերի լուծման գործում: Այսպես, օրինակ, Անդրանիկավանի (նախ-
կին Ջանգիլար) տնտեսությունը տոնավաճառների, առևտրի կազմակերպման այլ
ձևերի միջոցով «Պոլիվինիլացետատ» արտադրամիավորմանը անցյալ տարի մատա-
կարարեց շուրջ 200 հազար ռուբլու գյուղմթերքներ, չորս հեկտար հողատարածու-
թյուն էլ հատկացրել է խոզաբուծական օժանդակ տնտեսություն ստեղծելու համար:
Դրա միջոցով կլուծվի թե՛ ձեռնարկության, թե՛ պետտնտեսության աշխատավորնե-
րին մսամթերքով ապահովելու հարցը: Իսկ միավորումն իր հերթին շեֆական կար-
գով շուրջ 200 հազար ռուբլի գումար է տրամադրել գյուղի սոցիալական հարցերը
լուծելու համար: Արդեն սկսվել են ջրամատակարարման, գազապահովման աշխա-
տանքները, կառուցվում են բուժամբուլատորիա, մանկապարտեզ, կսկսեն գործել
կապի հանգույցը և այլ օբյեկտներ: Լենինյան շրջանի հետ համագործակցելով՝ զգա-
լի աշխատանքներ են կատարվում նաև մյուս գյուղերում:

Սակայն, ինչպես ասում են, ճշմարտությունից հեռու չես փախչի: Ինչպես ասա-
ցի, Ադրբեջանից շրջան են եկել հիմնականում քաղաքաբնակներ, արդյունաբերու-
թյան, շինարարության բնագավառի, անգամ եզակի մասնագետներ: Նրանք ձըգ-
տում են և կձգտեն աշխատել Երևանում: Ահա կոնկրետ օրինակ. անցյալ տարվա
սկզբին վերաբնակեցված գյուղերի տնտեսություններում հրամանագրված էին 3.200
աշխատողներ, մինչդեռ այժմ նրանց թիվը չի անցնում 2.100-ից: Եթե ավելացնենք
նաև, որ նրանց որոշ մասն էլ ձևականորեն է մասնակցում արտադրությանը, ապա
պատկերը պարզ կդառնա: Ստեղծված իրավիճակից դուրս գալու ելքը տեսնում ենք
գյուղում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր ստեղծելու մեջ: Թող
մարդիկ իրենց նախասիրած մասնագիտությամբ աշխատեն տեղերում, իսկ գյուղա-
տնտեսական եռուն շրջանում՝ մասնակցեն դաշտի ու այգու գործերին:

Մեր հաջորդ քայլը կլինի գյուղերը խոշոր գերատեսչությունների ու կազմակեր-
պությունների շեֆությանը հանձնելը: Արդեն հանրապետության Մինիստրների խոր-
հուրդը հաստատել է մեր առաջարկությունը, Արաքսամերձ (նախկին Ռանչպար)
գյուղը՝ Հայկոոպին, իսկ Հայանիստը (նախկին Դոստլուգ) Հայարդգազին հանձնելու
համար: Հուսով ենք, որ թե՛ մեկը, թե՛ մյուսը զգալի միջոցներ կներդնեն գյուղերի
սոցիալական դեմքը արմատապես փոխելու, արտադրական ինֆրակառուցվածք
ստեղծելու և տեղերում աշխատանքի ու կյանքի բավարար պայմաններ ապահովելու
համար: Համապատասխան շեֆական կազմակերպություններ կլինեն նաև մյուս նո-
րաբնակ գյուղերի համար:

Ձեռնարկված միջոցները մեկ նպատակ են հետապնդում. մարդկանց կապել գյուղին, նրա հողին ու ջրին, խթանել տնտեսավարման ու աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ներդրումը, առանց որոնց հնարավոր չէ լուծել պարենային պրոբլեմը:

Այո՛, նոր ագրարային քաղաքականության, տնտեսական ռեֆորմի իրականացման ճանապարհին արվում են առաջին քայլերը, բնականաբար, կան թերություններ ու բացթողումներ: Դեռևս ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքը արդյունավետորեն նպատակաուղղում գյուղատնտեսական արտադրության մեջ տնտեսավարման նոր հարաբերությունների արմատավորմանը, երբեմն իշխում է հնի իներցիան, չի հաղթահարվում բյուրոկրատական քաշքշուկը: Բերեմ մեկ օրինակ. Մարմարաշենի կոլտնտեսությունում Ասյա Մկրտչյանի և Աղավարդ Սիմոնյանի ընտանեկան օղակի ստացած եկամուտը 1988 թ. կազմել է կոլտնտեսության բուսաբուծության ընդհանուր եկամտի 21 տոկոսը այն դեպքում, երբ վարձակալական կապալով մշակում են ընդամենը 18 հեկտար հողատարածություն: Այլ կերպ ասած, օղակը, որտեղ աշխատել է ընդամենը ինը մարդ, արտադրել և իրացրել է 138 հազար ռուբլու գյուղմթերք: Վճարված աշխատավարձի և բոլոր տեսակի լրացուցիչ վարձատրությունների ու պարգևատրման հետ միասին յուրաքանչյուրի ամսական վաստակը կազմել է 680—700 ռուբլի: Նրանց մշակած կարտոֆիլի, բանջարեղենի և պտղի միջին բերքատվությունը 2—3 անգամ ավելի է եղել տնտեսության միջին ցուցանիշներից: Իսկ հետո ի՞նչ է պարզվել: Երբ անցյալ տարի վարձակալները ցանկացել են պայմանագիրը երկարացնել և շարունակել իրենց աշխատանքը, դեմ են առել կոլտնտեսության վարչության քար անտարբերությանը. «Ձեզ հատկացված հողը առանց այն էլ բերրի է, մենք էլ էդքան կստանայինք (ցավոք, այդպես չստացվեց), մենք ձեզ ուրիշ հողակտորներ ենք առաջարկում»:

Սա տիպական օրինակ է, որը ցույց է տալիս, թե որքա՜ն դժվարությամբ է ճանապարհ հարթում վարձակալությունը: Իսկ շատերի մեջ էլ այն պատկերացումը կա, թե վարձակալները նոր սեփականատերեր են կամ նոր նէպմաններ: Այս պայմաններում է, որ հողից գյուղացու օտարանալը առայժմ դժվարությամբ է հաղթահարվում: Ստեղծված վիճակից դուրս գալու ճանապարհին առայժմ որոնումների մեջ ենք: Անցյալ տարվա փորձը որոշակի հույս է ներշնչում. խոսքս խստիվ կամավորության սկզբունքի հիման վրա բերրիության, մշակաբույսերի տեսակի հաշվառմամբ հողի յուրաքանչյուր հեկտարի համար վարձավճարի սահմանումն է: Ընդ որում, վարձավճարը վարձակալը նախապես է մուծում տնտեսության դրամարկղ: Ստացված բերքից գոյացած ամբողջ հասույթը (պետական, շուկայական և պայմանավորված գներով վաճառք, միութենական ֆոնդի առաքում և այլն), ինչպես նաև գերպլանային ամբողջ արտադրանքը մնում են վարձակալին: Մեր կարծիքով այս մեթոդը առավել չափով է շահագրգռում գյուղացուն, որպեսզի հողի վրա թափած քրտինքի հատույցը առավել շատ լինի, իրացվի անկորուստ: Մյուս կողմից էլ տնտեսությունն է շահում: Նա վարձակալման տրված հողից սպասվելիք եկամտի արժեքը նախապես ստանում է գյուղացուց և այլևս կախում չունի նրանից: Վերջինս լավ աշխատի, թե վատ, արդեն հենց իր՝ վարձակալի գործն է: Բայց նա չի կարող վատ աշխատել, քանի որ գոնե հողի արժեքը պետք է վերականգնի:

Այստեղ մեկ պրոբլեմ էլ կա. մենք դեմ ենք այն կարծիքին, որ մեկ հեկտար վարելահողի համար սահմանվի կայուն վարձավճար: Հիմք ընդունելով երկրագործի ցանկությունը և տնտեսության անհրաժեշտ շահութաբերության ապահովումը՝ անհրաժեշտ է, որպեսզի հողատարածության միավորի վարձաչափը լինի խստիվ տարբերակված՝ ըստ դրա բերրիության և մշակաբույսերի տեսակի: Միայն նման ձևով կարելի է լուծել «ոչ եկամտաբեր» մշակաբույս հասկացության պրոբլեմը:

Ինչ խոսք, նման տնտեսագիտական հարցերի առկայությունը, իրականացվող տնտեսական ռեֆորմը պահանջում են շեշտակիորեն բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի գիտակցական մակարդակն ու քաղաքական ակտիվությունը, ընդլայնել ստեղծագործական ինքնուրույնությունը: Այդ կապակցությամբ անչափ կարևորվում է տնտեսագիտական ուսուցումը, որի հաջող վարման գործում մեծ է սկզբնական կուսկազմակերպությունների դերը: Ներկա պայմաններում մենք ելել ենք այն համոզման, որ սկզբնական կազմակերպության քարտուղարը, կուսակցական ակտիվը, առաջին հերթին, ինքը պետք է տիրապետի էկոնոմիկայի օրենքներին: Ոչ թե վերացական, կիսատ-պռատ պատկերացում ունենա, այլ մանրամասն ուսումնասիրի



պրակտիկան, կարողանա տնտեսական պրոբլեմների հետևում տեսնել դրանց քա-
ղաքական նշանակությունն ու ներգործությունը կոլեկտիվի գործերի վրա: Այդ ամե-
նը նկատի ունենալով՝ կուսշրջկոմը նախաձեռնեց խորացված տնտեսագիտական ու-
սուցման կազմակերպումը: Դեռևս 1988 թ. հրավիրվեց սկզբնական կուսկազմակեր-
պությունների քարտուղարների սեմինար-խորհրդակցություն, որտեղ մանրամասն
բացատրվեց նոր տնտեսական ռեֆորմի քաղաքական նշանակությունը, դրա բուն
էությունը: Շրջկոմի նախաձեռնությամբ սկզբնական կուսկազմակերպությունները սե-
մինար-խորհրդակցություններ անցկացրին նաև տեղերում, որոնցում հրավիրված
մասնագետները կոնկրետ բացատրություններ ու մեկնաբանություններ էին տալիս,
ներկայացնում նոր տնտեսական մեխանիզմի առանձնահատկությունները: Եվ ի՞նչ.
պարզապես պետք էր տեսնել, թե մարդիկ ինչպես էին հարցախեղդ անում զեկու-
ցողներին, ուզում ամեն ինչ իմանալ, ամեն ինչում կողմնորոշվել: Այստեղ նույնպես
մենք որոշակի տեղաշարժ ունենք, սակայն հարկավոր է նշել, որ ԾԱԱՄ-ը, համա-
պատասխան մյուս գերատեսչությունները շատ դեպքերում թերանում են տնտեսա-
գիտական ուսուցումը պատշաճ ձևով կազմակերպելու մեջ: Մեր ուսումնասիրություն-
ները ցույց են տալիս, որ պարապմունքների մի մասը անցնում է ձևականության
պայմաններում, չեն հաղթահարվում հնից ժառանգություն մնացած բարձրագոչու-
թյունը, ճառաբանությունը: Իմ խորին համոզմամբ տնտեսագիտական ուսուցումը
ճիշտ կազմակերպելու դեպքում այն կդառնա աշխատանքային ակտիվության բարձ-
րացման, հասարակական կյանքի նորացման պրոցեսների մեջ ներգրավվելու օգտա-
շատ ձև:

Վերջացնելով միտքս՝ կուզենայի նշել, որ անելիքներ, մտահղացումներ շատ ու-
նենք: Ու լավ ենք գիտակցում, որ մեր ցանկությունների իրականացման համար
նախ և առաջ պետք է ամուր տնտեսություն, որի ստեղծումը պայմանավորված է
յուրաքանչյուրիս լավ աշխատանքով: Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպու-
թյունները այդ ելակետով են ծավալում իրենց գործունեությունը, հաստատ համոզ-
մունքով, որ կուսկազմակերպության հեղինակությունը բարձրանում է ոչ թե սահմա-
նադրական հոդվածներով, հավաստիացման ճառերով, այլ կոնկրետ աշխատանքով,
մարդկանց հույսերին զորավիգ լինելու, ճշմարիտ խոսելու և ճշմարիտն անելու կա-
րողությամբ: Մենք գտնվում ենք նորի դժվարին ճանապարհին և կձգտենք հաղթա-
հարել ծագած դժվարությունները…

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՊՈՏԵՆՑԻԱԼԻ ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ

**Հ. ԶԱՔԱՐՅԱՆ**

ԶԲԱՂՎԱԾՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ բոլոր փուլերում գտնվել են հասարակության ուշադրության կենտրոնում: Բնականաբար, պատմական յուրաքանչյուր փուլում այդ մշակումներն արտացոլում էին տնտեսավարման կոնկրետ պայմանները, պահանջում զբաղվածության այն կողմերի առանձնացում, որոնք տնտեսավարման համար առավել կարևոր էին տվյալ ժամանակահատվածում:

Զբաղվածության ուսումնասիրման և աշխատանքային ռեսուրսների օգտագործման նկատմամբ ռեգիոնալ մոտեցման անհրաժեշտությունը պայմանավորված է բնակչության վերարտադրության, նրա զբաղվածության մակարդակի, աշխատանքի գործադրման ոլորտների և տնտեսության ճյուղերի միջև նրա բաշխման ժողովրդագրական ցուցանիշների տարբերությամբ: Մասնավորապես Հայկական ԽՍՀ-ում զբաղվածության պրոբլեմի լուծումը պայմանավորված է բազմաթիվ ուրույն, այդ թվում՝ ժողովրդագրական, պատմական և տնտեսաաշխարհագրական գործոններով, աշխատանքի համամիութենական բաժանման մեջ հանրապետությն դերով ու տեղով:

Աշխատանքային ռեսուրսներով ապահովվածությունը և դրանց բաշխման համամասնությունները էական ազդեցություն են գործում ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման վրա, ինչը, իր հերթին, տնտեսական նախադրյալներ է ստեղծում բնակչության վերարտադրության և հասարակական արտադրությանը նրա մասնակցության համար:

Այս հարցերը համգամանալի՝ գիտական մշակում են պահանջում տնտեսական զարգացման յուրաքանչյուր փուլում աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ բաշխման նպատակով: Նորովի է առաջադրվում նաև արդյունավետ լրիվ զբաղվածության ապահովման պրոբլեմը: Զբաղվածության հարաբերակցությունները արտադրական հարաբերությունների բաղկացուցիչ մասն են: Իբրև զարգացող համակարգ, դրանք պայմանավորված են համաժողովրդական սեփականության հասունության աստիճանով, նրա իրականացման ձևերով, արտադրողական ուժերի զարգացման մակարդակով, և, իրենց հերթին, հանդես են գալիս որպես վերջիններիս զարգացման արագացուցիչ կամ արգելակ:

Տնտեսավարման ձևերի ցածր արդյունավետության պատճառով զբաղվածության հասարակական կազմակերպումը նույնպես աչքի չէր ընկնում աշխատանքի իրավունքի և աշխատանքի համընդհանրության իրականացման ձևերի ճկունությամբ: Դա կաշկանդում էր մարդկանց նախաձեռնությունը՝ հանգեցնելով աշխատանքային պոտենցիալի օգտագործման դժվարությունների: Բացի այդ, դա մարդկանց մեջ հարուցում է ձևական մոտեցում հասարակական աշխատանքին մասնակցելու նկատմամբ, տանում դեպի զբաղվածության հարաբերությունների այլակերպում:

Լճացման ժամանակաշրջանում զբաղվածության ապահովման քաղաքականության իմաստն ըստ էության հանգեցվեց աշխատուժի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքի բավարարման, նրա նոր ակունքների որոնման: Իսկ էկոնոմիկայի կառավարման վնասաբեր մեխանիզմը տանում էր դեպի ռեսուրսների օգտագործման ծավալաչափերի ընդլայնում՝ կառավարման ցածր արդյունավետության պայմաններում: Ի հայտ եկան և սկսեցին ավելանալ բանվորական կադրերի «պակասորդի», աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի անկում: Այդ երևույթը ուղեկցվում էր արտադրության ներսում ավելորդ աշխատուժի թվակազմի աճով, որի վկայությունն են աշխատաժամանակի մեծ կորուստները ձեռնարկություններում, հիմնական գործունեությունից զգալի թվով մարդկանց շեղելու հնարավորությունը և այլ պարագաներ:

Աշխատուժի անարդյունավետ օգտագործման, աշխատանքի արտադրողականության ցածր մակարդակի, աշխատողների նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքի և աշխատուժի առկայության միջև հարաճուն քանակական ու որակական անհամապատասխանության պայմաններում գոյացավ մտածողության այնպիսի տրամաբանություն, որը գործնականում չէր ընդունում հասարակական արտադրությանը մարդկանց մասնակցության ճկուն ձևերը: Սահմանափակ է զբաղվածության այնպիսի ձևերի կիրառումը, ինչպիսիք են ոչ լրիվ աշխատանքային օրը կամ շաբաթը, տնային աշխատանքը կամ փոփոխվող գրաֆիկով աշխատանքը: Ի դեպ, դրանց տարածումը կարող էր նպաստել աշխատանքային պոտենցիալի լավագույն օգտագործմանը, նրա նախաձեռնության ակտիվացմանը, հասարակական աշխատանքին մասնակցելու նկատմամբ մարդկանց ստեղծագործ վերաբերմունքի զարգացմանը:

Կյանքը հրամայաբար պահանջում է գոյացած ստերեոտիպերի վերանայում, հասարակական պրոցեսների կառավարման հանդեպ նոր մոտեցումների մշակում:

Հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել չզբաղված աշխատունակ բնակչությանը հասարակական արտադրության մեջ ներգրավելու, մեր աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու, ժողովրդական տնտեսության ճյուղերում աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու ուղղությամբ: Ծարունակվել է գործող արդյունաբերական ձեռնարկությունների ընդլայնման և դրանց նոր մասնաճյուղերի կազմակերպման աշխատանքը: Այդ նպատակով դեռևս 1982 թվականին միութենական կառավարությունը հատուկ որոշում է ընդունել Հայկական ԽՍՀ աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման մասին:

1986—1989 թվականներին հանրապետությունում իրագործվել է ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանը, արդյունաբերական արտադրության աճի տեմպերի խթանմանը, գյուղատնտեսության և ողջ ագրոարդյունաբերական համալիրի ինտենսիվացմանն ու ընդլայնմանը, կապիտալ շինարարության և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի զարգացման ապահովմանն ուղղված միջոցառումների մի համալիր:

Ղեկավարվելով ԽՄԿԿ XXVII համագումարի և հետհամագումարյան պլենումների որոշումներով, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մշակեց հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացման կոնցեպցիան, որը հիմք հանդիսացավ ընթացիկ հնգամյակում և մինչև 2000 թվականն ընկած ժամանակամիջոցում Հայկական ԽՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների մշակման համար:

Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացումը պիտի կանխորոշեն առաջին հերթին արդյունաբերության այնպիսի ճյուղերը, որոնք բարձր նյութատար և էներգատար չեն, բայց միաժամանակ որակյալ բանվորական կադրերի և ինժեներատեխնիկական աշխատողների կարիք են զգում: Ըստ որում, արդյունաբերությունում հիմնական շեշտը դրվեց մեքենաշինության՝ որպես աշխատընկալ և գիտատեխնիկական առաջադիմությունը կանխորոշող ճյուղի վրա:

Զգալի աշխատանք է կատարվել արտադրողական ուժերի տարածքային տեղաբաշխման բարելավման և ազատ աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ուղղությամբ: XII հնգամյակում տեղի ունեցավ հասարակական արտադրությունում աշխատուժի չզբաղված մասի նվազում՝ աշխատանքի ինտենսիվացման մակարդակի միաժամանակյա բարձրացմամբ հանդերձ:

Չզբաղված աշխատանքային ռեսուրսները հասարակական արտադրության մեջ ներգրավելու համար նախատեսվում է արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի, արտադրամասերի ու տեղամասերի հետագա ընդլայնում և նորերի կազմակերպում, օժանդակ տնտեսությունների ստեղծում, տնային աշխատանքի գոր-

---

*ԶԱՔԱՐՅԱՆ ՀԱՄԼԵՏ ԱՎԵՏԻՍԻ— ՀԿԿ Կենտկոմի սոցիալ-տնտեսական բաժնի խորհրդատու, տնտեսագիտության թեկնածու*

ծադրման ծավալաչափերի մեծացում, արդյունաբերական արտադրության մնացուկների վերամշակման կոոպերատիվների ստեղծում, բնակչության ներգրավում անհատական աշխատանքային գործունեությանը և այլ միջոցառումներ:

Հանրապետությունում ժողովրդագրական օպտիմալ վերարտադրության պահպանման և օժանդակ տնտեսության հետագա զարգացման համար օժանդակ ու տնային տնտեսությունում զբաղվածների ռացիոնալ մակարդակը ներկայիս 12,8-ի փոխարեն պետք է կազմի 10—12 տոկոս:

Աշխատանքային ռեսուրսների աճի տարածքային ոչ միատեսակությունը և տնտեսական ու սոցիալական զարգացման ասպարեզում առանձին քաղաքների ու շրջանների հետ մնալը բնակչության զբաղվածության ռեգիոնալ մակարդակների էական տարբերությունների հիմնական պատճառներից են: 1988 թվականին հանրապետությունում հասարակական արտադրության մեջ զբաղված է եղել աշխատանքային ռեսուրսների միջին հաշվով 83,8 տոկոսը:

Ժողովրդական սպառման բազմազան ապրանքներ, ինչպես և մեքենաշինական առավելապես փոքր ձեռնարկությունների՝ մասնաճյուղերի, արտադրամասերի ու տեղամասերի լայն ցանցի ստեղծման հետ մեկտեղ չպետք է աչքաթող անել այդ ոլորտում առկա էական թերությունները՝ արտադրության տեխնիկական մակարդակի անմխիթար վիճակը, աշխատանքի հերթափոխայնության ցածր գործակիցը, արտադրանքի վատ որակը:

Հանրապետությունում լայն հնարավորություններ կան տնային աշխատանքի զարգացման համար: Տեղական արդյունաբերության մինիստրության տնային աշխատանքի «Ուրարտու» կոմբինատը թողարկում է ավելի քան 400 տեսակի արտադրանք՝ ձեռքով հյուսած, կարած, ասեղնագործած, մետաղից, փայտից, կաշվից պատրաստված իրեր, ժողովրդական գեղարվեստական արհեստագործության նմուշներ: Անհրաժեշտ պայմանների ստեղծմանը զուգընթաց հնարավոր է կարճ ժամանակում կրկնապատկել տնային աշխատանքում զբաղվածների թիվը:

Լուրջ թերություններից է մեքենաների և սարքավորումների անարդյունավետ օգտագործումը մեքենաշինական ձեռնարկություններում: Հայկական ԽՍՀ վիճակագրական կոմի միանվագ հաշվառման տվյալներով, 84 ձեռնարկությունների մեծ մասը չի կատարել հերթափոխայնության գործակիցը մեծացնելու և այն մինչև 1,6 տոկոսի հասցնելու համար սահմանված առաջադրանքները:

Մինչև 2000 թվականն ընկած ժամանակահատվածում բնակչության զբաղվածության ռացիոնալ մակարդակի ապահովման համար Հայկական ԽՍՀ արտադրողական ուժերի զարգացման և տեղաբաշխման սխեմայով նախատեսվում են ժողովրդական տնտեսության ճյուղերում նոր աշխատատեղերի ստեղծմանն ուղղված լուրջ միջոցառումներ: Հասարակական տնտեսությունում աշխատատեղերի ավելացումը ձեռք է բերվում նոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման և գործողների ընդլայնման, շինարարության, ոչ նյութական արտադրության և այլ ոլորտների ծավալման միջոցով:

Մինիստրություններն ու ձեռնարկությունները արտադրական շինություններ կառուցելու և ընդլայնելու, հաստոցներ ու մեքենաներ ստեղծելու, կատարելագործելու և վերացնելու իրավունք ունեն: Սակայն նրանք օրենսդրականորեն պատասխանատվություն չեն կրում այդ հիմնական ֆոնդերում աշխատող մարդկանց պահանջմունքների բավարարման համար: Իրավունքների և պատասխանատվության, աշխատատեղերի և աշխատուժի միջև գոյացած անհամամասնությունները շատ անհամապատասխանություններ են հարուցել աշխատանքի պայմանների ու գործիքների ստեղծման և կիրառման գործում: Դրա հետևանքներից մեկն այն է, որ արդեն ավելի քան 20 տարի է, ինչ ժողովրդական տնտեսությունում հիմնական արտադրաֆոնդերի ծավալը գերազանցում է դրանցում զբաղված մարդկանց թվակազմին: Այդ ավելորդ արտադրական ֆոնդերը, որպես կանոն, կենտրոնացված են նոր ձեռնարկություններում և արտադրամասերում: Մինչդեռ հներում սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության և կարողությունների օգտագործման գործակիցն անհամեմատ մեծ է: Եվ այնպես է ստացվում, որ նոր, ավելի արտադրողական սարքավորումներն օգտագործվում են ավելի վատ, քան հները:

Արտադրական նշանակության ֆոնդերի ավելցուկը ոչ միայն պրգելակում է գիտատեխնիկական առաջադիմությունը, այլև առաջացնում ոչ արտադրական նշանակության ֆոնդերի՝ բնակարանների, դպրոցների, հիվանդանոցների պակասություն: Այն պատճառով, որ գործարանների արտադրամասերը լեփ-լեցուն են հնացած մե-



քենաներով ու հաստոցներով, չտեղակայված սարքավորումների մեծ մասը որպես մեռյալ բեռ ընկած է պահեստներում, փչանում է նորակառույցներում:

Մեր կարծիքով, ինվեստիցիոն քաղաքականության մեջ ռեֆորմներն անբավարար են նպատակամղված, հեռանկարային չեն, իսկ երբեմն էլ պարզապես անորոշ են: Դեռևս շարունակվում է գրոհայնությունը շինարարությունում: Հենց դա էլ որոշ մարդկանց մղում է չարաշահումների:

Դրա ցայտուն դրսևորումներից են հավելագրումները: Հենց շինարարներին են ամենից լավ հայտնի հավելագրումների, այնպիսի օբյեկտներ շահագործման հանձնելու եղանակները, որոնց հիմքում բետոնի ոչ մի խորանարդ մետր չի լցված: Ծագում են բազմաթիվ հարցեր. ո՞վ, ինչպե՞ս և ինչու՞ է ընդունում գոյություն չունեցող օբյեկտը և վճարում նրա համար: Հապա ու՞ր են ընդունող հանձնաժողովի, պատվիրատուի ծառայության, նախագծային կազմակերպության շեփական վերահսկողության ներկայացուցիչները: Անշուշտ, այդ կազմակերպությունները նույնպես մեղավոր են Հայաստանի հյուսիսային շրջաններում տեղի ունեցած երկրաշարժի հետևանքների համար: Չէ որ թույլ են տրվել շատ կոպիտ խախտումներ նախագծային և մյուս աշխատանքների կատարման ընթացքում:

1988 թվականին մահացության շեշտակի ավելացումը, որը կազմեց 10,3 տոկոս, կապված էր երկրաշարժի ողբերգական հետևանքների հետ: Երկրաշարժի պատճառով նվազեց բնակչության բնական աճը, որը երկու տարում 17,2 տոկոսից իջավ 11,2 տոկոսի: Եթե հաշվի չառնենք երկրաշարժից զոհվածների թիվը, ապա մահացության ընդհանուր գործակիցը կկազմի 5,5 տոկոս:

1979 թվականի համեմատությամբ բնակչության թվակազմի զգալի աճ է նկատվում Բաղրամյանի (163,2 տոկոս), Նաիրիի (149,6 տոկոս), Աբովյանի և Հրազդանի (138,2 տոկոս), Անիի և Մասիսի (134,3 տոկոս), Աշտարակի և Արտաշատի (133 տոկոս), Էջմիածնի (130,4 տոկոս) շրջաններում: Միաժամանակ շեշտակիորեն նվազել է բնակչության թվակազմը Սպիտակի և Ամասիայի (29—30 տոկոս), Վարդենիսի (55,9 տոկոս), Ստեփանավանի (82,8 տոկոս), Կալինինոյի (88,3 տոկոս), Ղափանի (95,8 տոկոս) և այլ շրջաններում, ինչպես նաև Լենինականում (58,1 տոկոս) և Կիրովականում (50,9 տոկոս):

Բնակչության թվակազմի համեմատաբար բարձր աճը որոշ շրջաններում և նրա կտրուկ նվազումն այլ շրջաններում բացատրվում է երկրաշարժի պատճառով տեղի ունեցած ներհանրապետական տեղաշարժով, ինչպես նաև այն բանով, որ բնակչության մի մասը Հայաստանից տեղափոխվել է Ադրբեջան և հակառակը:

Երկրաշարժի հետևանքներից է նաև ծննդաբերության նվազումը տարերային աղետի գոտում ինչպես ուղղակի կորուստների, այնպես էլ այդ շրջաններում առաջացած տնտեսական, սոցիալ-կենցաղային, բարոյահոգեբանական պայմանների պատճառով: Ծննդաբերության մակարդակի իջեցումը, իբրև այսպես կոչված փոխհատուցման ընթացակարգի էֆեկտ, որոշ չափով կփոխհատուցվի նրա բարձրացումով հանրապետության կենտրոնական շրջաններում, մասնավորապես Երևանում:

Անշուշտ, փախստականների դրության կանոնավորման և վերականգնման աշխատանքների ընթացքի համեմատ ծննդաբերության մակարդակը կբարձրանա: Դրան կնպաստի նաև հանրապետությունում մշակվող ռեգիոնալ ակտիվ ժողովրդագրական քաղաքականության կենսագործումը:

Ինչ վերաբերում է բնակչության մահացությանը, ապա այն, հավանաբար, որոշ չափով կկրճատվի: 1988 թվականի բարձր մահացությունը, երկրաշարժի զոհերի մեծ թիվը կփոխհատուցվեն առաջիկա տարիներին:

1988 թվականին տեղի ունեցավ բնակիչների զանգվածային գաղթ Ադրբեջանից Հայաստան և հակառակը: Գաղթը փաստորեն դեռ չի ավարտվել, և նոր գաղթականները բնակչության ընթացիկ վիճակագրության տեսադաշտից դուրս չեն մնա: Իսկ դա նշանակում է, որ հանրապետության բնակչության թվակազմի աճի միտումը կուժեղանա գաղթի պատճառով:

Մեր օրերում բնակչության, ամենից առաջ աշխատունակ մարդկանց ինտենսիվ միգրացիա է նկատվում գյուղից քաղաք: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գյուղից քաղաք վերաբնակվելը չի արդարացվում տնտեսական նկատառումներով և որ դա սոցիալական բացասական հետևանքներ ունի: Հետևաբար, վերաբնակեցման գոյացած համակարգում գլխավոր նպատակին կարելի է հասնել միայն այդ միգրացիան կարգավորելու քաղաքականության շնորհիվ: Արդի պայմաններում առաջնահերթ նշանակություն ունի երկրաշարժից ավերված քաղաքների ու շրջանների աշխատունակ բնակչության զբաղվածության ապահովումը և այդ գոտու բնակիչ-

ների մասնագիտական վերաորակավորումը: Ինչպես հայտնի է, տարերային աղետի պատճառով ժողովրդական տնտեսության ճյուղերում վերացավ 167 հազար աշխատատեղ, ըստ որում, 82 հազարը՝ արդյունաբերությունում: Դրա հետևանքով բազմաթիվ մարդիկ զրկվեցին մշտական աշխատանքից:

ՀԽՍՀ աշխատանքի պետական կոմիտեի մարմինները կազմակերպել են տարերային աղետի գոտու ինչպես միութենական ենթակայության, այնպես էլ հանրապետական ձեռնարկությունների և կազմակերպությունների՝ անհրաժեշտ կադրերով ու մասնագետներով կոմպլեկտավորման վիճակի ուսումնասիրումը: Կարևոր խնդիր է շինարարական կազմակերպությունները անհրաժեշտ աշխատուժով համալրելը:

Տեղական կազմակերպությունները հաշվառում են այն անձանց, ովքեր ցանկություն են հայտնել աշխատանքի մեկնելու աղետի գոտու շրջանները: Քայլեր են ձեռնարկվել նվազեցնելու աշխատանքային ռեսուրսների սեզոնային արտագաղթը:

Սակայն, ինչպես ցույց է տալիս ուսումնասիրությունը, տեղական կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինները, աշխատանքի տեղավորման հաստատությունները կոնկրետ ներգործուն քայլեր չեն ձեռնարկում աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու համար: Աղետի գոտու քաղաքներում ու շրջաններում տասնյակ հազարավոր աշխատունակ մարդիկ աշխատանքով ապահովված չեն, նրանց շինարարական կազմակերպություններ ներգրավելու տեմպերը չեն համապատասխանում այսօրվա պահանջներին: Մի շարք մինիստրությունների և գերատեսչությունների ջանքերը՝ ենթագերատեսչական ձեռնարկություններում աշխատողների զբաղվածությունն ապահովելու համար, դեռևս անհրաժեշտ արդյունքներ չեն տալիս:

Անբավարար են օգտագործվում ժամանակավորապես աշխատանքից զրկված քաղաքացիների զբաղվածության մակարդակի բարձրացման հնարավորությունները՝ ինչպես գործող ձեռնարկություններն աշխատանքի բազմակի հերթափոխային ռեժիմի փոխադրելու, վերականգնվող և կառուցվող օբյեկտներում աշխատանքի 2—3 հերթափոխ կազմակերպելու, այնպես էլ ճոճանակային միգրացիայի կարգով արտադրական միավորումների այլ հարակից ձեռնարկություններում ու մասնաճյուղերում աշխատանքի տեղավորելու միջոցով, դրանք նույնպես հերթափոխային աշխատանքի փոխադրվելով, մինչև ավերված գլխավորող ձեռնարկությունների լրիվ վերականգնումը և գործարկումը:

Զբաղվածության ապահովման պրոբլեմը էլ ավելի սրվեց աղետի գոտուց տեղափոխված բնակիչների զանգվածային վերադարձի պատճառով: Աշխատանքից զրկված բնակիչներին հանրօգուտ աշխատանքի ներգրավելու ուղղությամբ ձեռնարկվող միջոցների արգասավորությունը բարձրացնելու և այդ գործում թերությունները վերացնելու նպատակով ջանքեր են գործադրվում՝ հնարավորին չափ արագացնելու արտադրական կարողությունների վերականգնումը: Գործող և վերականգնվող ձեռնարկությունները փոխադրվում են աշխատանքի բազմակի հերթափոխային ռեժիմի, ընդլայնվում են արտադրական ձեռնարկությունների մասնաճյուղերը, լայնորեն կիրառվում և զարգացվում է աշխատանքի կազմակերպման տնային ձևը:

Այս ամենը նպաստեց աշխատուժի սեզոնային արտագաղթի կանխմանը, վերականգնման-շինարարական աշխատանքներին որոշ չափով նրա ներգրավմանը, տեղական աշխատանքային ռեսուրսների հաշվին շինարարական կազմակերպությունները կադրերով համալրելուն:

Նյութերի վերլուծությունը ցույց է տալիս, որ մոտակա տարիներին հանրապետությունում ժողովրդագրական իրադրությունը կարող է փոխվել անցանկալի ուղղությամբ: Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ցածր տեմպերը կարող են հանգեցնել բնակչության արտահոսքի: Աղետի գոտուց Միության այլ վայրեր տեղափոխված անձանց մի մասը, հավանաբար, բնակություն կհաստատի հանրապետությունից դուրս գտնվող բնակավայրերում, եթե կառավարության նախատեսած ժամկետներում չստեղծվեն համապատասխան բնակարանային-կենցաղային պայմաններ և աշխատելու հնարավորություններ: Միաժամանակ պետք է նշել, որ աղետի գոտու քաղաքներում ու գյուղերում կան մեծ թվով չաշխատող անձինք, այդ թվում տղամարդիկ, որոնք չեն ներգրավվում վերականգնման աշխատանքներին: Աշխատանքային տեղերով ապահովված չլինելը կարող է ուժեղացնել արտահոսքն այդ վայրերից:

Տարերային աղետի պատճառով Լենինականում և Կիրովականում աշխատունակ բնակչության զբաղվածության ապահովման պրոբլեմն ավելի է խորացել: Այդ քաղաքների հասարակական տնտեսության մեջ աշխատողների թվակազմը համապատասխանաբար 70,7 և 63,2 հազար էր, մինչդեռ հիմա Լենինականում 51,3 հազար աշխատունակ տարիքի անձանցից աշխատում է միայն 42,8 հազարը կամ 83,6 տոկոսը, իսկ Կիրովականում՝ 47,3 հազարից 43,5 հազարը կամ 91,9 տոկոսը: Հիշյալ քաղաքներում լայն աշխատանք է ծավալվել աշխատունակ բնակիչների և աշխատատեղերի առկայությունը պարզելու և նրանց հասարակական արտադրությանը ներգրավելու համար:

Պետք է նշել, որ մի շարք արտադրամիավորումներ և արդյունաբերական ձեռնարկություններ աշխատուժի զբաղվածության համեմատաբար բարձր մակարդակ ունեն: «Մասիս» ա/մ Լենինականի № 9 կոշիկի փաբրիկան, նույն միավորման Կիրովականի կոշիկի փաբրիկան, բարձր ջերմաստիճանի ջեռուցիչների գործարանը և այլ ձեռնարկություններ մարդկանց ներգրավում են ոչ միայն արտադրական, այլև շինարարական և վերականգնման աշխատանքներում:

Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կարևոր ուղղություններից մեկը կոոպերատիվ և անհատական աշխատանքային գործունեության հետագա զարգացումն է: Հանրապետությունում կոոպերատիվ գործունեության ներկայիս մեծ թափը հանգեցնում է աշխատավորների սոցիալական ակտիվության ուժեղացմանը, այդ գործին բնակչության ավելի ու ավելի լայն խավերի ներգրավմանը: Եթե 1988 թվականի կեսերին գրանցվել էր շուրջ երկուսուկես հազար կոոպերատիվ, ապա մեկ տարի անց դրանց թիվը հասավ 13299-ի: Ավելի քան վեց անգամ ավելացավ նրանցում ընդգրկված աշխատողների թվակազմը՝ 14,6-ից հասնելով 91,5 հազարի: Ավելի քան 11 անգամ մեծացավ նաև իրացվող արտադրանքի (ծառայությունների) ծավալը՝ կազմելով 376 777 հազար ռուբլի:

Հանրապետությունում նկատելիորեն աճել է ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող կոոպերատիվների թիվը: Այսպես, 1988 թվականի համեմատությամբ գործող կոոպերատիվների և դրանցում աշխատողների թիվն ավելացել է 5 անգամ:

Հասարակական սննդի, առևտրի գործող կոոպերատիվների թիվն ավելացել է 5,8 անգամ:

Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կարևոր ուղիներից է կառավարչական կադրերի օգտագործման բարելավումը: Բանը ոչ միայն նրանց ընդհանուր թվակազմի կրճատումն է, այլև կառուցվածքի և պատրաստման կատարելագործումը: Անշուշտ, նրանցից շատերը չեն համապատասխանում ժամանակակից արտադրության կողմից ներկայացվող պահանջներին: Տնտեսական մեխանիզմի նոր ձևերի իրականացմանն ամենից վատ են նախապատրաստված ձեռնարկությունների ու կազմակերպությունների տնտեսական օղակները՝ սկսած գործարանային վարչությունից և վերջացրած արտադրամասային ծառայություններով: Այսպիսի պայմաններում կրթության ազդեցությունը թուլանում է այն կապակցությամբ, որ կատարվող աշխատանքի բնույթը հաճախ աշխատողին չի խրախուսում լիովին դրսևորելու իր բոլոր ընդունակությունները և գիտելիքները: Աշխատողների կրթական մակարդակի բարձրացման գործից արտադրության տեխնիկակազմակերպական զարգացման հետ մնալու պատճառով ավելի ու ավելի է արժեզրկվում մտավոր աշխատանքի հեղինակությունը: Վարչական ապարատի կառուցվածքի կատարելագործումը, նրա կրճատումը և վերախմբավորումը գործնականում առաջին քայլերն են աշխատուժի օգտագործման կառուցվածքի էական փոփոխման ճանապարհին, որն անխուսափելի է էկոնոմիկայի որակական նոր վիճակի անցնելիս:

Էկոնոմիկայի՝ զարգացման ինտենսիվ ուղու վրա անցնելը կհանգեցնի աշխատուժի զբաղվածության տեսակների լայնածավալ վերաբաշխման՝ ըստ մասնագիտական աշխատանքի, ուսման, տնային տնտեսության, երեխաների դաստիարակության, ինչպես նաև ըստ տարածքի: Շատ մարդկանց առջև կծառանա գործունեության տեսակը փոխելու, այլ ճյուղում աշխատանքի անցնելու, բնակավայրից տեղափոխվելու խնդիրը: Իսկ հասարակական տնտեսությունում գործունեության այլ ոլորտների (ուսում, երեխաների դաստիարակություն) օգտին զբաղվածության մակարդակի իջեցումը հնարավորություն կտա ավելացնել ազատ ժամանակը ի շահ մարդու համակողմանի զարգացման, ժողովրդագրական բոլոր խմբերում փոխել ու բարելավել աշխատանքային պայմանները:

Ձեռնարկությունների և մինիստրությունների անցումը տնտհաշվարկային հարաբերությունների, ճյուղային մասնագետներին կնպատակամղի խնայել աշխատանքային, նյութական ու տնտեսական ռեսուրսների յուրաքանչյուր միավորը: Խնամար-

կյալների և ավելորդ աշխատողների տեղերի պահպանումը տնտեսապես ոչ ձեռնտու և նույնիսկ անհնար կդառնա:

Հայաստանում հասարակական արտադրությունում աշխատանքային ռեսուրսների ներգրավման մեծ ռեզերվներ ունեն շինարարությունը, տրանսպորտը, առևտուրը, հասարակական սնունդը, ոչ նյութական արտադրության ոլորտի ճյուղերը, որոնց համար անհրաժեշտ է ժամանակին նախապատրաստել որակյալ աշխատուժ:

Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում բանվորական կադրերի նկատվող պակասը, աշխատանքային ժամանակի օգտագործման ցածր մակարդակը և կադրերի հոսունությունը, որոնք պայմանավորված են աշխատանքի ծանր ու վնասակար պայմաններով, աշխատավարձի, արտադրության կուլտուրայի անբավարար մակարդակով, բնակարանային պրոբլեմի սրությամբ, աշխատանքի ռեժիմով, մասնագիտությունից գոհ չլինելով, թելադրում են արտադրության կարիքներին համապատասխան աշխատուժի ժամանակին պատրաստման և նրա պլանաչափ ներգրավման ապահովման, հանրապետության տարածքում շինարարության օբյեկտների տեղաբաշխման կատարելագործման անհրաժեշտությունը: Ըստ որում, դրանք տեղաբաշխելիս պետք է հաշվի առնել աշխատանքային այնպիսի ռեսուրսների առկայությունը, որոնք հնարավորություն կընձեռեին հետագայում լուծելու աշխատողների թվակազմի հետ աշխատատեղերի հավասարակշռման պրոբլեմը, զգալիորեն բարձրացնելու բնակչության զբաղվածության ընդհանուր մակարդակը:

Բարձրանում է ըստ կրթության և մասնագիտական պատրաստության աշխատանքային ռեսուրսների որակական կազմի ուսումնասիրման, այս կամ այն տարածքում, ինչպես նաև քաղաքային ու գյուղական վայրերում էկոնոմիկայի ճյուղային կառուցվածքի առաջիկա փոփոխություններին նրա համապատասխանության ապահովման նշանակությունը:

Աշխատանքով ապահովված շրջաններում անհրաժեշտ է պայմաններ ստեղծել աշխատանքի արտադրողականության տեմպերի շեշտակի աճի համար, բոլոր ոչ գյուղատնտեսական ճյուղերում աշխատանքային տեղերի թվի ավելացմամբ հանդերձ: Այդ նպատակով, գործող արտադրության տեխնիկական վերազինմանը զուգընթաց անհրաժեշտ է կառուցել նոր ձեռնարկություններ, այդ թվում նաև ոչ նյութական արտադրության բնագավառում, ավելացնել այդ բնագավառի աշխատողների թիվը և բաժինը, որն առանձնապես կարևոր է բնակչության տարիքային կառուցվածքի, ինչպես նաև սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակով երկրի առանձին ռեգիոնների հավասարվելու անհրաժեշտության նկատառումով:

Արտադրության ինտենսիվացման, ձեռնարկությունները լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրվելու դեպքում աշխատանքային ռեսուրսների հետ արտադրության հավասարակշռման և նրա մեխանիզմի պահպանման չափանիշները փոխվում են: Նոր պայմաններում տնտեսական անհրաժեշտություն է առաջանում աշխատուժով ապահովել ամենից առաջ արտադրական ֆոնդերի արդյունավետ մասը, որը հնարավորություն կընձեռի փոքր ծախսումներով բավարարել սպառողական պահանջմունքը, արտադրության ռեալ պահանջներից ելնելով՝ ազատել ավելորդ աշխատողներին: Կրկին հրատապ է դառնում աշխատանքի իրավունքի և դրա պարտադիր լինելու սկզբունքի իրականացումը՝ բնակչության որոշ մասի մոտ արմատացած սոցիալական պորտաբուծության երևույթների հաղթահարման ու կանխման նպատակով: Այսպիսի պայմաններում արդյունավետ լրիվ զբաղվածության ձեռքբերումն ավելի բարդ գործ է, քան էկոնոմիկայի էքստենսիվ զարգացման փուլում: Պահանջվում է կենտրոնացված պլանային սկզբունքի ուժեղացում՝ զբաղվածության և կադրային քաղաքականությունների ձևավորման գործում, զբաղվածության կատարելագործման կոնցեպտուալ մոդելների, սպառման ու կուտակման, կապիտալ ներդրումների, կադրերի պատրաստման կառուցվածքում: Դա հնարավորություն կտա ապահովել աշխատանքային պոտենցիալի վերարտադրության կառավարման համակարգի բոլոր օղակների ներքին հավասարակշռվածությունը, բարձրացնել կադրերի պատրաստման և աշխատողների միջճյուղային և միջռեգիոնալ տեղափոխումների կարգավորման արգասավորությունը, հասնել զբաղվածության քաղաքականության, կադրային, տնտեսական, կառուցվածքային, տեխնիկական, ինչպես նաև ժողովրդագրական քաղաքականության միասնության:

# ԲԱՐՁՐ ՈՐԱԿԸ՝ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՆ

**Ք. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

ԱՍՈՒՄ ԵՆ, ՃԱՇԱԿԻ ՀԱՐՑՈՒՄ ընկեր չկա: Դա ճիշտ է: Ամեն մարդ ունի ապրանքների ընտրության իր չափանիշները: Սակայն բոլորն էլ ձգտում են հագնվել ճաշակով, տունը ձևավորել գեղեցկատես կահկարասիով, ունենալ բազմազան արդուզարդեր, կենցաղում օգտագործել մեքենաներ ու սարքեր:

Ամենատարբեր տեսակի, գույնի, ձևի ապրանքներին ներկայացվող ամենագլխավոր պահանջը մեկն է՝ բարձր որակ: Մարդիկ արտադրությունից պահանջում են նորաձև վերարկու, կոստյում, վերնաշապիկ, կոշիկ և բարձրորակ այլ ապրանքներ, որոնք բավարարեն սպառողների բազմազան պահանջները, իսկ ժամանակի հետ մարդկանց ճաշակը փոփոխվում է, և նոր պահանջներ են ներկայացվում արտադրությանը:

Ինչ խոսք, վերակառուցման այսօրվա պայմաններում էլ ավելի է մեծանում աշխատանքի և արտադրանքի որակի բարելավման ժողովրդատնտեսական նշանակությունը, դրա անմիջական կապը արտադրությունը ռացիոնալ, խնայողաբար և առաջավոր մեթոդներով վարելու հետ:

Բարձրացնել արտադրանքի որակը՝ նշանակում է այն համապատասխանեցնել գիտատեխնիկական առաջադիմության, բնակչության պահանջարկի աճի և ժողովրդական տնտեսության զարգացման արդի մակարդակին: Բարձրորակ արտադրանքը շահավետ է բոլորին: Ձեռնարկությանը այն տալիս է ռեսուրսների խնայողություն և մեծածախս գնի հավելում, ինչը հանգեցնում է շահույթների աճի և աշխատողների նյութական խրախուսման ֆոնդի ընդլայնման: Սպառողները ստանում են առավել հուսալի, երկարակյաց ապրանք և տնտեսում նյութական միջոցներ:

Արտադրանքի որակը անբաժանելի է սպառողական արժեքից: Յուրաքանչյուր ապրանքի սպառողական արժեքն ու որակը ստեղծվում են արտադրության պրոցեսում, մարդկանց աշխատանքով, դառնում օգտակար իր՝ նյութական և հոգևոր այս կամ այն պահանջմունքները առավելագույն չափով բավարարելու համար:

Սակայն արտադրանքի սպառողական արժեքն ու որակը նույն տնտեսագիտական հասկացությունները չեն: Առաջինը մարմնավորում է կոնկրետ աշխատանքի քանակը և սպառողական արժեքի ծառայության, հուսալիության ու օգտակարության աստիճանը: Այն արտադրանքն է համարվում բարձրորակ, որը տվյալ ժամանակահատվածում իր տեխնիկական, տնտեսական, գեղագիտական հատկանիշներով ու հատկություններով բավարարում է մարդկանց համակողմանի պահանջմունքները: Արտադրանքի որակին ներկայացվող պահանջները շարունակ փոխվում են, դրանք զարգանում են՝ արտադրողական ուժերի, գիտատեխնիկական առաջընթացի, ռեսուրսների առկայության, մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների աճին համապատասխան: Այն պայմանավորված է նաև կոմպլեքս միջոցառումների կիրառմամբ, որոնք ընդգրկում են արտադրության կազմակերպման կատարելագործումը, բարձրորակ ստանդարտների, նորմատիվների ստեղծումը, նյութական և բարոյական խթանների կիրառումը, արտադրանքի ատեստավորումը որակի բարձր կատեգորիաներով, կադրերի որակավորումը, վարպետությունը... Արտադրանքի որակը բնութագրվում է ընդհանուր, հանրագումարային այնպիսի ցուցանիշներով, ինչպես հուսալիությունը, նպատակայնությունը, երկարակեցությունը, նորաձևությունը, անվտանգությունը, գեղեցկությունը և այլն: Միաժամանակ յուրաքանչյուր արտադրանք ունի իր որակը բնութագրող ուրույն հատկանիշներն ու հատկությունները: Օրինակ, բանջարեղենի

*ՊԵՏՐՈՍՅԱՆ ՔՐԻՍՏԱՓՈՐ ԱԲԲԱՅԻ — տնտեսագիտության թեկնածու, դոցենտ*

կենցաղային իրեր, գյուղատնտեսական անորակ մթերք, զանազան սարքավորումներ, որոնք պահանջարկ չեն գտնում բնակչության շրջանում: Մի՞թե հանդուրժելի է, որ կաթի յուղայնությունը բազիսային 3,6-ից ցածր տոկոսով պետությանը վաճառելու հետևանքով կոլեկտիվ և խորհրդային տնտեսությունները վիթխարի վնասներ են կրում: Այսպիսի փաստեր շատ կան ամենուրեք, գրեթե բոլոր շրջաններում և տնտեսություններում: Բայց չէ որ դրա արտադրության համար պետությունը և տնտեսությունները հսկայական նյութական արժեքներ, ֆինանսական միջոցներ և աշխատանք են ծախսում: Սակայն ձեռնարկությունների և անբարեխիղճ աշխատողների մեղքով ու ցածրորակ տեխնոլոգիայի պատճառով այդքան նյութական վերջնական արդյունքներ դարձել են ոչ պիտանի և անօգտագործելի: Սպառողական պահանջներին արտադրանքի որակի անհամապատասխանությունը, իսկ երբեմն էլ բացահայտ խոտանը ըստ էության նշանակում են նյութական ռեսուրսների և մեր ժողովրդի աշխատանքի վատնում: Եվ դրա հետևանքով խախտվում են արտադրություն - շրջանառություն - իրացում տնտեսական փոխադարձ կապերը:

Ցածրորակ արտադրանքից մեծապես տուժում է նաև ձեռնարկությունը: Նա փաստորեն անորակ արտադրանքից ոչ միայն չի շահում, այլև տնտեսական ու բարոյական խոշոր վնասներ է կրում: Շրջանառու միջոցները, որոնք անորակ արտադրանքի ձևով տարիներով կուտակված են խանութներում և պահեստներում, ձեռնարկությանը արտադրանքի դրամական փոխհատուցում, շահույթ, նոր ստեղծված արժեք չեն բերում: Գործարանն ու ֆաբրիկան աստիճանաբար սպառում են ֆինանսական և նյութական միջոցները և կանգնում տնտեսական ծանր վիճակի առաջ:

Մի՞թե անորակ արտադրանքից քիչ է տուժում շրջանառության ոլորտը: Բարձրորակ ապրանքները խիստ պակաս են: Առևտրի աշխատողները այն աստիճան են իջեցնում անորակ ապրանքների գները, որ վիրավորանք են պատճառում նույնիսկ արտադրողների արժանապատվությանը: Պարզ է, որ դրանք ցածր են ապրանքների վրա կատարված ծախսերից: Տնտեսական վնասը մեծ է, բայց ինչ արած, նրանք ձգտում են գոնե ծախսերի մի մասը վերադարձնել շրջանառություն: Դա էլ չի հաջողվում: Այս ամենը վկայում է, որ մենք ռացիոնալ չենք տնտեսավարում: Որքան էլ տարօրինակ լինի, անտեսելով բնակչության իրական պահանջարկը, մենք փաստորեն տուրք ենք տալիս արտադրությանը՝ հանուն արտադրության, հանուն պահեստներում և խանութներում ապրանքների կուտակման և, ի վերջո, միջոցների, հումքի, նյութերի և իհարկե՝ աշխատանքի վատնման: Կարելի՞ է արդյոք հանդուրժել, որ մարդիկ աշխատավարձ և պարգևատրում ստանան խոտանի համար: Հիմնական պատճառն այն է, որ աշխատանքի վարձատրությունը կատարվում է, ելնելով ոչ թե արտադրանքի որակից, այլ քանակից: Աշխատանքի վարձատրությունը պետք է ուղղակի կախման մեջ դրվի արտադրանքի որակից, տեսականուց, շուկայի պահանջմունքներին արձագանքելու կարողությունից:

Էկոնոմիկայի զարգացման մեր բոլոր ջանքերն այսօր նպատակամղված են այն բանին, որ հնարավորություն ունենանք ավելի շատ միջոցներ հատկացնելու սոցիալական կարիքների համար, բարձրացնելու բնակչության կենսամակարդակը: Աշխատավորների եկամուտները տարեցտարի ավելանում են: Եվ դա օրինաչափ է: Բայց օրինաչափ է նաև այն, որ գնորդի պահանջարկը ավելի ու ավելի մեծ չափով է տեղաշարժվում դեպի բարձրորակ, տեխնիկապես կատարյալ առարկաները:

«Արտադրանքի որակի համակողմանի բարձրացումը, նշել է Մ. Ս. Գորբաչովը, պետք է գտնվի մեր տնտեսական քաղաքականության կենտրոնում: Որակ և դարձյալ որակ— ահա մեր այսօրվա լոզունգը: Լուծելով որակի պրոբլեմը, կարելի է լուծել նաև քանակի պրոբլեմը: Սա ժամանակակից տեխնիկայի նկատմամբ երկրի պահանջմունքների, բազմազան ապրանքների նկատմամբ բնակչության հարանուն պահանջմունքի ավելի ու ավելի լրիվ բավարարման, ժողովրդական տնտեսության մեջ դեֆիցիտների հաղթահարման միակ հուսալի ուղին է»: Արտադրանքի բարձր որակը հնարավորություն կտա խնայել մեծ չափերի նյութեր, հումք, ֆինանսական միջոցներ, աշխատաժամանակ: Խորհրդային արտադրանքը, մեքենաներն ու սարքավորումները, արտադրատեսակները պետք է լինեն բարձրորակ, այնպիսիք, որ դրանց գերապատվություն տրվի ներմուծվող ապրանքների համեմատությամբ: Սա կարևոր է ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական առումով: Մեր շուկան պետք է հագեցնել ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքներով: Որակը պետք է դառնա մեր վերակառուցման քաղաքականության առանցքը:

Արտադրանքի և աշխատանքի որակի բարձրացումն ունի ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական մեծ նշանակություն: Նա խորհրդային մարդուն ներշնչում է տիրոջ զգացում: Նրան հարստացնում է բարոյապես, բարձրացնում է աշխատողի արժանապատվությունը և հեղինակությունը:

Արտադրություն -շրջանառություն - սպառող կապը ամրապնդելու նպատակով որոշ ձեռնարկություններ տնտեսափորձ են կատարում: Նրանք պայմանագրեր են կնքում առևտրական կազմակերպությունների հետ, որտեղ ասվում է, որ եթե ութ ամսվա ընթացքում շրջանառության մեջ գտնվող ապրանքների 1/3-ը չի իրացվում, ապա խանութը այն ամբողջությամբ հետ է վերադարձնում գործարան կամ ֆաբրիկա: Ձեռնարկությունը միայն ապրանքների իրացումից հետո կարող է իրեն հաշիվ տալ՝ շահույթո՞վ է աշխատել, թե՞ վնասով: Այսպիսով, արտադրանքի համար վճարումները կատարվում են միայն դրանց իրացումից հետո: Ամբողջ աշխատանքը կառուցվում է ֆաբրիկա-խանութ սկզբունքով, պայմանագրային գներով հաշվի առնելով ստանդարտները և դրանց տեխնիկական ցուցանիշները: Դա շահավետ է և շահագրգռում է բոլորին՝ թողարկելու որակյալ ապրանքներ, ավելի լավ սպասարկելու բնակչությանը:

Անհրաժեշտ է նաև ծավալել արտադրական կոոպերատիվների ցանցը: Նրանք, մրցակցելով պետական նույնատիպ ձեռնարկությունների հետ, նյութապես և բարոյապես շահագրգռված են արտադրելու բարձրորակ ապրանքներ և մատչելի գներով վաճառելու բնակչությանը:

Որակի բարձրացման կարևոր և ռեալ ուղի է արտասահմանյան գիտատեխնիկական առաջադիմությանը հաղորդակից լինելը: Մենք պետք է ակտիվորեն ստեղծենք ժամանակակից խառը ձեռնարկություններ, ֆիրմաներ, մասնաճյուղեր և արտադրենք միջազգային ստանդարտներին համապատասխանող բարձրորակ ապրանքներ:

Լուծելով արտադրանքի որակի և ոչ նյութական ոլորտի աշխատանքների որակի բարելավման, բարձրացման պրոբլեմները, մենք էական առաջընթաց քայլ կկատարենք վերակառուցման ճանապարհին, կբուժենք մեր էկոնոմիկան, կբավարարենք մեր քաղաքացիների աճող պահանջմունքները, արժանավոր տեղ կգրավենք միջազգային շուկայի մրցակցությունում: Դա հնարավորություն կտա լուծելու ապրանքների դեֆիցիտի պրոբլեմը, կայունացնելու խորհրդային ռուբլու գնողունակությունը և կանխելու նրան սպառնացող ինֆլյացիայի աղետը:

գեցվածությունը նորագույն տեխնիկայով: Եվ այնտեղ ապրող բնակչության կուլտուրան ուղղակիորեն պայմանավորված է վերը թվարկված գործոններով:

Ինչ վերաբերում է այսօրվա պրոբլեմներին, ապա դրանք մեզ մոտ, բացի արդեն նշվածներից, շատ ու շատ են: Դա, իհարկե, մշակութային օջախների վերականգնումն է երկրաշարժի գոտում: Քաջ հասկանալով, որ այդ շրջանների բնակչությունը ամենից առաջ բնակարանի կարիք ունի, մենք մշտական հսկողության տակ ենք պահում ինչպես վերականգնման, այնպես էլ այնտեղ աշխատող մարդկանց, շինարարների կուլտուրական սպասարկման հարցերը: Այդ նպատակներով կուլտուրայի մինիստրությունում ստեղծվել է շտաբ, որը մշտական աշխատանք է կատարում աղետի գոտում:

Հատկապես կուզեի նշել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի հետ մեր կապերի մասին: Դեռևս անցյալ տարի մշակեցինք Արցախի հետ համագործակցելու և նրան մշակութային կյանքի բոլոր ասպարեզներում օգնելու կոմպլեքսային պլան: Դրա համաձայն գեղարվեստական շատ կոլեկտիվներ, կատարողներ, ստեղծագործական միությունների ներկայացուցիչներ, մշակույթի և արվեստի նշանավոր գործիչներ արդեն եղել են Արցախում, համերգներ, հանդիպումներ, զրույցներ անցկացրել: Այսօր Ստեփանակերտում աշխատում է Հայպետֆիլհարմոնիայի ներկայացուցիչը, որն իր հերթին պլանավորում է Արցախում աշխատող կատարողների և գեղարվեստական կոլեկտիվների համերգային գործունեությունը: Լուրջ աշխատանք ենք տանում նաև մարզի կուլտլուսհիմնարկների հետ: Ընդհանուր առմամբ, կարելի է ասել, որ ներկայումս հանրապետության կուլտուրայի մինիստրությունը և ԼՂԻՄ-ի կուլտուրայի վարչությունը համատեղ աշխատանք են կատարում մարզում մշակութային կյանքն աշխուժացնելու համար:

Մենք պրոբլեմներ ունենք նաև թատերական գործում: Պարզ է, որ ցանկացած թատրոնի գործունեության հիմքում պետք է դրվի բարձրորակ դրամատուրգիական նյութ: Սակայն, ցավով պիտի նշել, որ մեր դրամատուրգները հաճախ ժամանակից, այսօրվա իրողություններից հետ են մնում, բավարար կերպով չեն իմաստավորում պատմական զարգացման այս բարդ հատվածում ծագող պրոբլեմները: Մեր դրամատուրգների ստեղծագործությունը կրում է խիստ սահմանափակ բնույթ ինչպես աշխարհայացքային, այնպես էլ գեղարվեստական տեսակետից: Բնականաբար, այդպիսի մակարդակի գրական նյութը ոչ մի կերպ չի կարող նպաստել թատրոնների ստեղծագործական աճին: Այս ամենից զատ պետք է լրջորեն մտածենք ռեժիսորական կադրերի պատրաստման, երիտասարդական թատրոն-ստուդիաների ցանցի զարգացման համար, անհրաժեշտ պայմաններ ստեղծելու մասին: Այստեղ հարկ է ավելի հանգամանորեն խոսել թատրոն-ստուդիաների պրոբլեմների մասին:

Ես համամիտ չեմ այնպիսի հարցադրմանը, երբ երկրի շատ անվանի թատերական գործիչներ տարբեր ամբիոններից և մամուլի էջերում արտահայտում են այն միտքը, որ թատրոն-ստուդիաները որպես «կենդանի օրգանիզմ կարող են ծնվել ու մահանալ»: Նրանք մոռանում են, որ «մահացած» թատրոնի հետ «կարող է մահանալ» նաև նրա կոլեկտիվը՝ այդպես էլ ոտքի չկանգնելով: Ցավոք, այդ թատրոնները, համաձայն թատրոն-ստուդիաների մասին այսօրվա «Կանոնադրության», կարող են ստեղծվել ցանկացած կազմակերպության առընթեր՝ ձևակերպվելով իշխանության տեղական մարմինների միջոցով: Դրանով իսկ խափանվում է այդ պրոցեսների վրա տեղերում ակտիվորեն ազդելու՝ ինչպես կուլտուրայի մինիստրության, այնպես էլ նրա մարմինների հնարավորությունը: Իսկ առայժմ հանրապետությունում ծնվում ու գործում են տնտհաշվարկային թատերական կոլեկտիվներ, որոնք բեմադրությունների խիստ կասկածելի որակով հանդերձ, հանդես են գալիս տարբեր ռեգիոններում, ջանադրաբար շրջանցելով Երևանն ու մյուս մեծ քաղաքները, որտեղ հանդիսատեսն ավելի պահանջկոտ է, քան ծայրամասում: Չնայած սրան, թատերական գործիչների միությունն ու կուլտուրայի մինիստրությունը համապատասխան, տեսադաշտից չպետք է բաց թողնեն թատրոն-ստուդիաների գործունեությունը, առավել ևս, որ դրանց հիմնամասը ստեղծագործական երիտասարդությունն է:

Հենց այս նպատակով վերջերս անցկացրինք թատրոն-ստուդիաների ստուգատես, որը հայտնաբերեց այդ կոլեկտիվների կազմավորման պրոցեսի ողջ բարդությունը, ստեղծագործական կարողությունը:

Վերակառուցումը վերաբերում է նաև համերգային կազմակերպություններին: Վերջերս որոշում ընդունեցինք Հայգլխհամերգը Հայպետֆիլհարմոնիայի վերակազ-



մավորելու մասին: Այս որոշման էությունն այն է, որ հրաժարվեցինք չարդարացված խոշորացումից և մեր համերգային կազմակերպությանը վերադարձրինք ինչպես հանրապետության, այնպես էլ նրա գործունեության մասշտաբներին համապատասխանող անունը:

Այսօր զգալի աշխուժություն է նկատվում հանրապետության համերգային կյանքում: Մեծ թվով կոլեկտիվներ ու կատարողներ հյուրախաղերի են մեկնում արտասահման: Որպես դրական երևույթ պետք է նշել սիմֆոնիկ երաժշտության ուրբաթները, որոնք սկսել են մեծ թվով ունկնդիրներ գրավել: Այդուհանդերձ, համերգային կյանքում ևս կան լուրջ պրոբլեմներ: Համերգային աշխատանքով զբաղվող կոոպերատիվ կազմակերպությունների ցանցի զարգացումը, ըստ իս, բախում է առաջացրել այդ գործի կազմակերպման երկու ձևերի միջև: Ի դեպ այստեղ առկա է կիսակատար որոշումը, որը հանգեցնում է որոշակի քաոսայնության: Այսպես, չնայած այն հրահանգին, որ համերգային կոոպերատիվները կարող են աշխատել միայն պրոֆիլային կազմակերպության, այն է՝ Հայպետֆիլհարմոնիայի համաձայնությունից հետո, ներկայումս հանրապետության շրջաններում կան կոոպերատիվներ, որոնք գործում են առանց համերգային կազմակերպության պայմանագրի: Նրանց գործունեությունը ավելի շատ կրում է զուտ առևտրական, քան կուլտուրական բնույթ, որովհետև ստեղծվում են «ում հարմար է և ում անհրաժեշտ է» կասկածելի սկզբունքով: Ժամանակն, անշուշտ, իր գործը կանի, և մշակութային աշխատանքի այդպիսի ձևերը կվերանան: Բայց չի կարելի նստել և սպասել՝ երբ կգա այդ ժամանակը: Հիմա համերգային շատ կոոպերատիվներ զբաղված են կատարողների և կոլեկտիվների «ներմուծմամբ» ու «արտահանմամբ»: Ընդ որում, որպես կանոն, «արտահանումը» կազմակերպվում է արտասահման: Եվ գնում են բոլորը. և՛ նրանք, ովքեր հայ մշակույթը կարող են ներկայացնել ու այդ իրավունքն ունեն, և՛ նրանք..., ուրիշներ... Տարօրինակ պատկեր է ստացվում. բոլոր կազմակերպությունները հանկարծ ուզում են համերգային աշխատանքով զբաղվել: Այստեղ կան և՛ ֆոնդեր, և՛ կոոպերատիվներ, և՛ ընկերություններ, և՛ բոլոր նրանք, ովքեր պետք է զբաղվեն միանգամայն այլ գործերով: Հարց է ծագում. արդյոք պե՞տք է որևէ կոորդինացնող կենտրոն, թե՞ ոչ: Սա պրոբլեմի մի կողմն է: Մյուս կողմից անհամապատասխանություն է ծագում համերգային գործի կազմակերպման երկու ձևերի՝ պետականի և կոոպերատիվի միջև: Պետական կազմակերպումն ունի արտիստների աշխատանքի վճարման իր նորմատիվային փաստաթղթերը, տոմսերի գնագոյացումը և այլն: Իսկ կոոպերատիվներն այսօր իրենց գործունեությունն իրականացնում են կոլեկտիվի կամ կատարողի, դահլիճի տիրոջ հետ պայմանավորվածության համաձայն, և կարող են միանգամայն ազատ կերպով օգուտ ստանալ՝ առանձնապես հոգ չտանելով հանդիսատեսի մասին: Սա, իհարկե, նորմալ չի կարող համարվել, և այստեղ հարկավոր են մտածված, բայց արմատական որոշումներ: Ի միջի այլոց, պետք է անկեղծորեն ասել, որ մենք տակավին պատրաստ չենք միանշանակ գնահատական տալ ստեղծված վիճակին և հարցը լուծել համերգային գործի կազմակերպման այս կամ այն ձևի օգտին: Լիովին հնարավոր է, որ ծանր ու թեթև անելով բոլոր «թեր» և «դեմ» կողմերը, կհանգենք հետևյալ եզրակացությանը. այն ինչ տեղի է ունենում հիմա՝ մշակութային կյանքի դեմոկրատացման նորմալ պրոցես է: Թեպետ հիմա պատկերը զգուշացնող է, որովհետև արդեն թե՛ հանրապետություններից, թե՛ արտասահմանից ահազանգեր ենք ստանում «հյուրախաղերի» մեկնած որոշ կատարողների ու խմբերի ցածր մակարդակի մասին:

Մեզ դեռևս չի բավարարում էստրադային արվեստի զարգացումը հանրապետությունում: Փաստորեն Հայաստանի փառաբանված պետական ջազ-նվագախմբից բացի, մեզ մոտ չկա ոչ մի էստրադային կոլեկտիվ, խումբ, որ կարողանա կանգնել այսօրվա պահանջների մակարդակին: Եվ եթե դասական ժանրում ունենք շատ որոշակի հաջողություններ՝ դրանք և՛ համամիութենական, և՛ միջազգային մրցույթներում մեր երաժիշտների բազմաթիվ հաղթանակներն են, և՛ կամերային անսամբլների, քառյակների, երգչախմբերի բարձր պրոֆեսիոնալ մակարդակը, ապա էստրադային ժանրում լավատեսության համար հիմքեր չունենք: Հենց այս հանգամանքով առաջնորդվեցինք, երբ դիմեցինք պետպլան և լուծեցինք Երևանի Ա. Խաչատրյանի անվան երաժշտական մանկավարժական ուսումնարանում էստրադային բաժանմունք բացելու հարցը:

Լուրջ պրոբլեմներ ունեն նաև ժողովրդական երաժշտության և պարի գեղարվեստական կոլեկտիվները: Ինչպես նշեցինք վերը, 1989 թվականի հոկտեմբերին մինիստրությունում այս հարցին նվիրված կոլեգիայի նիստ հրավիրեցինք, որտեղ

թուրքերի աղմկալի դատավարության մեջ: Ինչպես հայտնի է, 1919 թ. ապրիլից մինչև հուլիսը թուրքական դատարանը քննության առավ երիտթուրքական նախկին պարագլուխների պատասխանատվության հարցը՝ ինչպես Թուրքիային համաշխարհային պատերազմի մեջ ներգրավելու, այնպես էլ հայկական ջարդեր կազմակերպելու համար: Ռազմական ատյանը նշանակված էր սուլթանի կողմից, նրա նախագահն էր գեներալ Մուստաֆա Նազըմ փաշան, իսկ անդամները՝ թուրք չորս բարձրաստիճան զինվորականներ: 1919 թ. հուլիսի 5-ի դատավճռով փախուստի մեջ գտնվող Թալեաթը, Էնվերը, Ջեմալը, դոկտոր Նազըմը հեռակա կարգով մահվան էին դատապարտվել (Հայերի ցեղասպանությունը ըստ երիտթուրքերի դատավարության փաստաթղթերի: Առաջաբանը, թարգմանությունը և ծանոթագրությունները Ա. Հ. Փափազյանի, Ե., 1988, էջ 126), իսկ գեներալ Էսատ փաշայի նախագահությամբ թուրքական զինվորական ատյանը 1920 թ. հունվարի 13-ի դատավճռով մահվան էր դատապարտել մի այլ դահճի՝ դոկտոր Բեհաէդդին Շաքիրին՝ իթթիհատական կուսակցության գաղափարախոսին և «Հատուկ կազմակերպության» ղեկավարին:

Նշված և դատական այլ պրոցեսների նյութերը տպագրվել են կառավարության «Թաքվիմի վեքայի» պաշտոնաթերթում 1919—1920 թթ.: Պատահական չէ, որ թուրք պատմաբանները գիտակցորեն շրջանցում են նաև այդ փաստաթղթերը: Բերենք մի քաղվածք հիշված դատավարության մեղադրական եզրակացությունից. «Դատական փաստաթղթերը վկայում են, որ «Միություն և առաջադիմություն» կուսակցության կենտրոնական կոմիտեն միաժամանակ բաղկացած է եղել երկու հատուկ կազմակերպություններից, որոնցից մեկը գործել է հրապարակայնորեն՝ կուսակցության ներքին կանոնադրության և ծրագրի համաձայն, իսկ մյուսը՝ ընդհատակյա և գաղտնի, հրահանգներով...

Ներկա հետաքննության գլխավոր հարցն այն է, որ հայերի տեղահանության ընթացքում, տարբեր ժամանակներում ու զանազան վայրերում տեղի ունեցած հանցագործությունները և հատկապես յուրաքանչյուր հանցագործության նկատմամբ օրենքի հիման վրա կատարված քննությունները ցույց են տալիս, որ դրանք ոչ թե սահմանափակ կամ տեղական բնույթ են ունեցել, այլ կանխամտածված իրականացվել են վերոհիշյալ անձերից բաղկացած և միասնական ուժ հանդիսացող «հատուկ կենտրոնի» բանավոր հրահանգներով և գաղտնի հրամաններով» (նույն տեղը, էջ 37—38):

Այնուհետև մեղադրական ակտում խոսվում է Թալեաթի և երիտթուրքական այլ պարագլուխների ուղղակի պատասխանատվության մասին. «Լիովին ապացուցված է, որ այդ կոտորածները տեղի էին ունենում Թալեաթ, Էնվեր և Ջեմալ բեյերի անմիջական հրամաններով և գիտությամբ (գործ 11): 1331 (1915) հուլիսի 21-ի թվակիր Թալեաթ բեյի ծածկագիր հեռագիրը, որն ուղղված է Դիարբեքիրի, Խարբերդի, Ուրֆայի և Տեր Զորի վալիներին և մութասարրիֆներին հրահանգում է ճանապարհներին մնացած դիակները թաղելու, լքյալ գույքը վառելու և ընդհանրապես դիակները ձորերը, գետերը և լճերը չգցելու մասին» (նույն տեղը, էջ 42—43):

Այդ նույն մեղադրական եզրակացությունից բացորոշ երևում է, թե ինչ խիստ պատիժների կարող էին ենթարկվել հայերին օգնող անձինք:

«Երրորդ բանակի հրամանատար Մահմուդ Քյամիլի ստորագրությունը կրող հեռագրում նշված է, որ հայերից որևէ մեկին հովանավորող մահմեդականը մահապատժի է ենթարկվելու իր բնակավայրում, և տունն էլ հրդեհվելու է: Եթե հովանավորողը պետական պաշտոնյա լինի, ապա գործից վտարվելով՝ դատվելու է զինվորական դատարանով: Իսկ եթե զինվորական լինի, ապա որպես հանցագործ՝ կանգնելու է ռազմական բարձր ատյանի առաջ (գործ 13, փաստաթուղթ № 1): Այս խստությունները ցույց են տալիս, թե ինչու տվյալ վայրի մահմեդականները և մանր պաշտոնյաները չէին կարողանում տեղի ունեցող գազանությունների առջևն առնել» (նույն տեղը, էջ 44):

Բնականաբար ժամանակակից թուրք պատմաբաններին և երիտթուրքերի ջատագովներին բոլորովին ձեռնտու չէ մեջբերել կամ սոսկ հիշատակել իթթիհատականների հայտնի դատավարության հետ կապված փաստաթղթերը:

***

ԻՐ ՁԱՓԵՐՈՎ ՆԱԽԱԴԵՊԸ ՉՈՒՆԵՑՈՂ ԱՐԵՎՄՏԱՀԱՅՈՒԹՅԱՆ ՈՉՆՉԱՑՈՒՄԸ բողոքի լայն ալիք առաջ բերեց Ռուսաստանի, Ֆրանսիայի, Անգլիայի, ԱՄՆ-ի, Շվեյցարիայի, Դանիայի, Ուրուգվայի և այլ երկրների հասարակայնության



մեջ: Երիտթուրքական կառավարող կլիկի հանցագործությունների դատապարտմամբ հանդես եկան պառլամենտի դեպուտատներ, լրագրողներ, գիտնականներ, մշակույթի գործիչներ (այդ մասին տե՛ս «Геноцид армян в Османской империи», с. 355—507):

Ռուսաստանում մարդասիրությամբ և կարեկցանքով լի հոդվածներով հանդես եկան Ս. Կիրովը, Վալերի Բրյուսովը, պրոֆ. Մ. Կովալևսկին, թուրքագետ Վ. Գորդլևսկին, Լ. Օշերովսկին և շատ ուրիշներ (տե՛ս նույն տեղը):

Ֆրանսիայի առաջադեմ հասարակայնությունը, որը ցասումնալի կերպով դատապարտել էր 1894—96 թթ. Աբդուլ Համիդի կազմակերպած ջարդերը, այս անգամ էլ իր բողոքի ձայնը բարձրացրեց: Աշխարհահռչակ արևելագետ Ժակ դը Մորգանը գրեց «Արևելքի բարբարոսների դեմ» գիրքը, ճանաչված պատմաբան ու հրապարակախոս Ռընե Պինոնը իր գիրքը վերնագրեց «Հայերի բնաջնջումը, մեթոդը գերմանական, գործը՝ թուրքական»: Անատոլ Ֆրանսը հանդես եկավ Փարիզի համալսարանում՝ Սորբոնում, իր հայտնի ճառով (La revue des «Amities franco-etrangeres». Mai jurn 1916, p. 33—35):

Բողոքեց նաև Անգլիայի, Շվեյցարիայի, այն ժամանակ չեզոք Ամերիկայի Միացյալ Նահանգների հասարակայնությունը: Բավական է նշել, որ միայն 1915—17 թթ. ամերիկյան «Նյու Յորք թայմս», «Քարենթ Հիստորի», «Ատլանտիկ մանթլի», «Ինդիփենդենթ», «Նյու Ռիփաբլիկ», «Դը Լիթերերի Դայջեստ», «Դը Նեյշըն» և այլ թերթերում ու ամսագրերում տպագրվել են մի քանի հարյուր հոդված, տեղեկություն, թղթակցություն հայ ժողովրդի ողբերգության մասին: Այդ նյութերի վերնագրերն իսկ խոսում են դրանց բովանդակության մասին. «Թուրքերը գնդակահարում են կանանց ու երեխաներին», «Ջարդերը Հայաստանում», «Հայերի ողբերգությունը ուժգնանում է», «Հայերը քշվել են անապատներ՝ մահվան», «Հայաստանի կործանումը», «Զանգվածային սպանությունները Հայաստանում», «Հայերի ողբերգական վախճանը», «Հայկական ճամբարների սարսափները», «Պե՞տք է արդյոք մահանա Հայաստանը», «Մի ազգի գողգոթան» և այլն (Richard D. Kloian. The Armenian Genocide. Third edition. Berkeley, California, 1985):

Համաշխարհային հասարակայնությունը, դատապարտելով հայերի զանգվածային սպանությունները, հանդես էր գալիս երիտթուրքական եռյակի և իթթիհատական մյուս ղեկավարների՝ որպես այդ հանցագործությունների գլխավոր մեղավորների, պատասխանատվության ենթարկելու պահանջով:

«... Դրանք հրամանի համաձայն արված ջարդեր էին,— գրում էր Ա. Ն. Մանդելշտամը:— Հենց երիտթուրքական կառավարությունը նախապես մտածված և սատանայորեն ղեկրետավորեց հայ ժողովրդի ոչնչացումը... Այդ իսկ պատճառով թուրքական կառավարությունը անխնա խստությամբ արգելում էր և մերժում երկրում գտնվող եվրոպացիների որևիցե գթասիրտ միջամտություն: Նա ամերիկյան կառավարությանը նույնիսկ թույլ չտվեց հայերին տեղափոխելու Ամերիկա: Առավել դաժանությամբ, քան Աբդուլ Համիդի ժամանակ, նա մահապատժի էր ենթարկում այն թուրքերին, ովքեր հանդգնում էին օգնել հայերին...»: (A. Mandelstam, նշվ. աշխ., էջ 277—278):

Կ. Պոլսում գերմանական զինվորական միսիայի անդամ, փոխգնդապետ Շտանգեն 1915 թ. օգոստոսի 23-ին իր զեկույցում գրում էր. «... Կատարվածից հետո կարելի է վստահությամբ խոստովանել հետևյալը: Հայերին աքսորելու և ոչնչացնելու մասին որոշումն ընդունվել է Կ. Պոլսում երիտթուրքական կոմիտեի կողմից: Հավանաբար, դա հենց նրա կողմից էլ կազմակերպվել ու իրականացվել է՝ ռազմական իշխանությունների ու զանազան քանդաների օգնությամբ» (Геноцид армян в Османской империи, с. 300):

Անգլիական պատմաբան, լորդերի պալատի անդամ Ջեյմս Բրայսը ևս աներկիմաստ արտահայտվում էր երիտթուրքական կառավարության մեղսակցության վերաբերյալ. «... Դա քրիստոնյա հայերի դեմ ուղղված մահմեդականների ցասման մի բերկրանք չէր: **Ամեն ինչ արվում էր կառավարության կամքի համաձայն** և դա հետևանք էր ոչ թե կրոնական մոլեռանդության, այլ քաղաքական նկատառումների» (Տե՛ս Arnold J. Toynbee. Armenian atrocities: the murder of a nation. London 1915, p. 6. (ընդգծումն իմն է— Ռ. Ս.):

Երիտթուրքական կառավարության պատասխանատվության հարցը շոշափել է Թուրքիայում Յոհաննես Լեպսիուսը՝ իր «Տեղեկագիր հայ ժողովրդի վիճակի մասին Թուրքիայում» հայտնի գրքում, որը գրված է ջարդերի անմիջական ականատես գեր-

մանական պաշտոնյաների, միսիոներների, չեզոք տերությունների դիվանագիտական ներկայացուցիչների և այլ փաստաթղթերի բարեխիղճ ուսումնասիրության հիման վրա: Հիշյալ գրքի երկրորդ բաժնում, որը կրում է «Պատասխանատվության հարցը» վերնագիրը, հեղինակը քննում է թուրքական իշխանությունների պատասխանատվության աստիճանը երկրի օրինական քաղաքացիների բռնի տեղահանությունների, նրանց գույքի ապօրինի զավթումների կամ ուղղակի թալանի և, վերջապես, բռնի գործողությունների՝ տեղերում կազմակերպված ջարդի, գաղթի ճանապարհին և համակենտրոնացման ճամբարներում ձեռնարկված զանգվածային սպանությունների համար:

«Մեր կողմից բերված փաստերից,— գրում էր Լեպսիուսը,— անառարկելիորեն հետևում է, որ տեղահանությունները կարգադրվել և իրականացվել էին Կ. Պոլսի կենտրոնական կառավարության կողմից») (J. Lepsius, նշվ. աշխ., էջ 261):

Լեպսիուսը բոլոր անօրինականությունների և հայ ժողովրդի դեմ գործված ողջ հանցագործությունների հիմնական պատասխանատու համարում էր «Միասնություն և առաջադիմություն» կոմիտեն (նույն տեղը):

Գերմանական մի այլ հումանիստ՝ աշխարհահռչակ արևելագետ Յոզեֆ Մարկվարտը իր գործընկեր, պրոֆեսոր Ժակ դը Մորգանի հետ միաժամանակ հանդես եկավ եղեռնի պատասխանատուներին միջազգային չափանիշով դատապարտելու ու պատժելու պահանջով. «Ամենից առաջ գերմանական կառավարությունից պետք է պահանջել հանձնելու Էնվեր փաշային ու Թալեաթ փաշային՝ զանգվածային սպանությունների հեղինակներին: Նրանք պետք է հանձնվեն ոչ թե նոր թուրքական կառավարությանը, այլ Հայկական Հանրապետությանը կամ Անտանտին, այն հաշվով, որ նրանց դատի միջազգային դատարանը» (J. Marquart. L' origine et la reconstitution de la nation arme'nienne, Paris, 1919 p. 18):

Պետք է նշել, որ առաջին համաշխարհային պատերազմի ավարտից հետո հայերի զանգվածային ջարդերի անմիջական պատասխանատուներին դատապարտելու հարցը բարձրացվել է Ֆրանսիայի առաջադեմ հասարակայնության կողմից տարբեր առիթներով: Այսպես, 1920 թ. դեկտեմբերի 25—30-ը Տուր քաղաքում տեղի ունեցած ֆրանսիական սոցիալիստական կուսակցության XVIII համագումարում մի շարք պատգամավորներ հանդես եկան հայկական ողբերգության գլխավոր պատասխանատուներից մեկի՝ Էնվեր փաշայի դատապարտմամբ, դժգոհություն հայտնելով, որ «քաղաքական այդ բախտախնդիրը», այն բանից հետո, ինչ տեղի էր ունեցել Թուրքիայում 1914—1915 թթ., դեռ կարողացել էր ազատ կերպով հայտնվել 1920 թ. սեպտեմբերին Բաքվում կայացած Արևելքի ժողովուրդների առաջին համագումարում որպես Արևելքի ճնշված ժողովուրդների ներկայացուցիչ և, նույնիսկ, համարձակություն ունեցել ձայն խնդրելու իր «դեկլարացիայի» համար:

«Եվ դա այն Էնվեր փաշան էր,— ասել է իր ելույթում եվրոպական սոցիալիստական շարժման ղեկավար, Կարլ Մարքսի թոռ Ժան Լոնգեն,— որի ձեռքերի վրա կա մեկ միլիոն հայերի արյունը... Դա որոշակի է, որ Էնվեր փաշան այն քաղաքականության գլխին էր, որը հանգեցրեց մեկ միլիոն հայերի ոչնչացմանը» (տե'ս Le congre's de Tours. Paris, 1980, p. 536—337):

Նշենք, որ նոր փաստաթղթերի հրապարակումները նույնպես հերքում են ժամանակակից թուրք պատմաբաններին, որոնք փորձում են պաշտպանության տակ առնել երիտթուրքական հանցավոր ղեկավարներին՝ ժխտելով նրանց անձնական պատասխանատվությունը հայկական ցեղասպանության համար: Ավստրո-հունգարական դիվանագիտական փաստաթղթերի վերջերս լույս տեսած ստվարածավալ հատորը պարունակում է նոր ապացույցներ այն մասին, որ հայերին ոչնչացնելու հրամանները անմիջականորեն գալիս էին երիտթուրքական կառավարությունից: (Տե'ս The Afmenian genocide documentation. Volume 2. München, 1988, p. 243—244):

Կարևոր է նշել, որ օսմանյան կայսրությունում հայերի ցեղասպանության դատապարտմամբ հանդես է եկել ընդհատակում գտնվող Թուրքիայի կոմունիստական կուսակցությունը, որի կենտկոմը 1984 թ. սեպտեմբերի 17-ին հրապարակած իր հայտարարության մեջ մատնանշում էր. «Հետադիմական ֆաշիստական ուժերը, Էվրեն-Օզալի դիկտատուրան այդքան տարիների ընթացքում փորձում էր ժխտել այդ խայտառակությունը, որով թուրք ժողովրդի վրա բիծ թողեցին օսմանյան կայսրությունը և «Միասնություն և առաջադիմություն» կուսակցության պրոիմպերիալիստական կառավարությունը» («Yeni çag», 1984, № 10, s. 97—98):





Իսկ հայկական ցեղասպանության 70-րդ տարեդարձի առիթով Թուրքիայի կոմկուսի Կենտկոմն իր պաշտոնաթերթում հրապարակեց մի հայտարարություն, որտեղ մասնավորապես ասվում էր. որ «ամեն մի թուրք հայրենասեր չպետք է մոռանա պատմական այդ փաստերը» («Atilim», 1985, № 1 Mayis, s 3).

Ժամանակակից թուրք պատմաբաններին և պատմության այլ կեղծարարներին հասցված ուժեղ հարված էր միջազգային հեղինակավոր կազմակերպության՝ Ժողովուրդների մշտական ատյանի կողմից 1984 թվականի ապրիլի 13—16-ը Փարիզում կազմակերպված նիստը, որը քննեց Թուրքիայի նախկին կառավարողների պատասխանատվության հարցը: Միջազգային այս դատարանը ընդունեց որոշում, որտեղ մասնավորապես ասված էր.

«Հայ ազգաբնակչությունը նախկինում ներկայացրել է և ներկայացնում է մի ժողովուրդ, որի հիմնական իրավունքները, անհատական թե կոլեկտիվ, ներկայումս էլ պետք է հարգվեն միջազգային իրավունքի համաձայն:

Հայ բնակչության ոչնչացումը տեղահանությունների կամ ջարդի եղանակով ներկայացնում է ցեղասպանություն, որն անժամանցելի է Գենոցիդի հանցագործությունը կանխելու և դրա համար պատժելու 1948 թ. դեկտեմբերի 9-ի կոնվենցիայի ոգուն համապատասխան:

Երիտթուրքերի կառավարությունը մեղավոր է այդ գենոցիդի համար, որը վերաբերում է 1911—17 թթ. կատարված արարքներին:

Հայկական ցեղասպանությունը նաև «միջազգային հանցագործություն է», որի համար թուրքական պետությունը պետք է պատասխանատվություն կրի և չփորձի խույս տալ դրանից այն պատրվակով, որ այդ պետության գոյության մեջ ժառանգականություն չկա:

Այդ պատասխանատվությունը սկզբունքորեն իր հետ բերում է պարտավորություն՝ պաշտոնապես ճանաչելու այդ գենոցիդի իրողությունը և հետևաբար այն վնասը, որ կրեց հայ ժողովուրդը:

Միավորված ազգերի կազմակերպությունը և նրա անդամներից յուրաքանչյուրն իրավունք ունի պահանջելու ճանաչել այն և աջակցել հայ ժողովրդին այդ նպատակով» (Tribunal permanent des peuples. Le crime de silence. Le génocide des Arméniens. Paris, 1984, p. 347—348):

Միջազգային չափանիշի ևս մի փաստաթուղթ: 1987 թ. հունիսի 18-ին Եվրոպական պառլամենտը, անդրադառնալով 1915-ի ցեղասպանությանը, ընդունեց որոշում, որի երկրորդ կետը ազդարարում էր. «Եվրոպական պառլամենտն այն կարծիքին է, որ Օսմանյան կայսրության տարածքում հաստատված հայերի դեմ 1915—17 թթ. ձեռնարկված ողբերգական գործողությունները իրենցից ներկայացնում են գենոցիդ՝ «Գենոցիդի հանցագործությունը կանխելու և դրա համար պատժելու կոնվենցիայի համաձայն, որն ընդունվել է Միավորված ազգերի կազմակերպության գլխավոր ասամբլեայի կողմից 1948 թ. դեկտեմբերի 9-ին» (Direction génerale de l' information et des relations publiques. Division des publications et compte rendues de presse Strasbourg, le 15—19 juin 1987, p. 41):

Ժամանակակից թուրք պատմաբանների աշխատությունների քննական վերլուծությունը հնարավորություն է ընձեռում ընդհանուր բնույթի եզրակացություններ անելու:

1. Հայաստանի, հայերի, Հայկական հարցի պատմության սիստեմատիկ ու նպատակասլաց ուսումնասիրությունը Թուրքիայում սկսվել է 1960-ական թվականներից, իսկ մի շարք հիմնական գործեր լույս են տեսել 1970—80-ական թվականներին: Այդ ուսումնասիրությունները խթանվեցին հայկական ցեղասպանության հիսնամյակը նշելու շրջանում: Միջազգային հասարակայնությունը, մարդկանց նոր սերունդները հասու դարձան այն ճշմարտությանը, որ հենց ցեղասպանության թուրքական քաղաքականության հետևանքով է հայ ժողովրդի պատմական հայրենիքի հիմնական մասը՝ Արևմտյան Հայաստանը դատարկվել հայ ազգաբնակչությունից, իսկ եղեռնից փրկվածները սփռվել աշխարհով մեկ:

2. Այդ պայմաններում թուրք պատմագրության վրա դրվում էր չափազանց ծանր և անշնորհակալ խնդիր՝ ամեն գնով ապացուցել, որ պատմական և քաղաքական տեսանկյունով Հայաստանը երբեք գոյություն չի ունեցել, իսկ «Հայաստան» աշխարհագրական հասկացողությունը երբեք չի ընդգրկել հայ ազգաբնակչության հոծ զանգվածներ և որ այդ ազգաբնակչությունն Անատոլիայում թուրքերի տիրապետության ողջ ժամանակաշրջանում կազմել է աննշան փոքրամասնություն:

3. Այս հիմնադրույթ կոնցեպցիայից ելնելով, թուրք պատմաբանները կառուցել են հակագիտական մի տեսություն, ըստ որի հայ ժողովուրդը ոչ միայն ճնշման չի ենթարկվել Օսմանյան կայսրությունում, այլև օգտվել է ամեն կարգի արտոնություններից այնքան ժամանակ, քանի դեռ չէր ապստամբել իր «հովանավորի»՝ թուրքական օրինական պետության դեմ: Իսկ հայ ժողովրդի ազատագրական շարժումը թուրք հեղինակները ներկայացնում են որպես օրինական կառավարության դեմ ուղղված ահաբեկչական գործողությունների մի շղթա:

4. Շրջանցելով այն հարցը, թե ինչու՞ էին հայ աշխատավոր գյուղացիական զանգվածները ապստամբության դիմում, թուրք պատմաբաններն ամբողջությամբ պաշտպանության տակ են առնում կառավարող շրջանների հայաջինջ քաղաքականությունը՝ սկսած Աբդուլ Համիդ II-ից և վերջացրած Քեմալ Աթաթյուրքով:

5. Թուրք պատմաբանները և քաղաքագետները ժխտում են հայկական հարցի ծագման օրինաչափությունը, նրա գլխավոր էությունը՝ արևմտահայության ազատագրումը թուրքական դարավոր լծից: Որպես իշխող տեսակետ այս հարցում առաջ է քաշվում այն մտացածին վարկածը, որ Հայկական հարցը հայերի հարցը չէ, այն հորինվել է եվրոպական մեծ տերությունների դիվանագիտության կողմից Օսմանյան կայսրության ներքին գործերին միջամտելու նպատակով:

6. Ժամանակակից թուրք պատմագրության մեջ հատուկ տեղ է հատկացված «Միություն և առաջադիմություն» կուսակցության ու երիտթուրքական կառավարության քաղաքականության լուսաբանմանն ազգային հարցում, մասնավորապես հայերի նկատմամբ: Չնայած գնահատականների որոշ տարբերություններին, թուրք հեղինակները համակարծիք են գլխավորում՝ 1915 թ. հայերի հետ «կատարվածը», այսինքն՝ արևմտահայության բնաջնջումը տեղահանության և ջարդերի միջոցով պայմանավորված էր ռազմական նկատառումներով՝ նրանց ռուս-թուրքական սահմանից հեռացնելու անհրաժեշտությամբ:

7. Ընդունելով հանդերձ մի քանի հարյուր հազար հայերի կորուստը, թուրք պատմաբաններն այդ բանում մեղադրում են առանձին անպատասխանատու պաշտոնյաների, ոստիկանների, քուրդ ավազակների և այլն: Իսկ հիմնական կորուստներ, ըստ նրանց պնդումների, հայերը տվել են հիվանդությունների և համաճարակների պատճառով: Ինչ վերաբերում է երիտթուրքական ղեկավարներին, ապա նրանք պատասխանատվություն չեն կրում հայկական ողբերգության համար, որովհետև նրանց գործողությունները կանխամտածված բնույթ չեն կրել և չի եղել հայության ոչնչացման որևէ ծրագիր:

8. Հայերի զանգվածային սպանությունների, հայկական ցեղասպանության փաստն իսկ ժխտելու նպատակով թուրք պատմաբանները կեղծում են նաև Արևմտյան Հայաստանում, ինչպես նաև Օսմանյան կայսրության ողջ տարածքում առաջին համաշխարհային պատերազմից առաջ առկա հայ ազգաբնակչության ընդհանուր թիվը:

9. Վերջին տարիներին թուրք հեղինակների գործերը՝ նվիրված Հայաստանի, հայ ժողովրդի, հայ-թուրքական փոխհարաբերությունների պատմությանը, սկսել են հրատարակվել նաև արևմտաեվրոպական լեզուներով, նպատակ ունենալով ապակողմնորոշել միջազգային հասարակական կարծիքը, որը պահանջում է ճանաչել հայերի ցեղասպանությունը և դատապարտել այն՝ որպես հանցագործություն մարդկության դեմ:

---

# ՍՏԱՏՈՒՍ ՔՎՈՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՊԱՆԴԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ Է

**Ա. ԱԳՈՋՅԱՆ**

ԱՐԴԵՆ ԵՐԿՈՒ ՏԱՐԻ Է ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է Արցախը հայրենիքին վերամիավորելու համար: Այդ արդար պայքարի դեմ հայ ժողովրդի թշնամիները վերակենդանացրել են ստատուս քվոյի (եղած վիճակի պահպանման) և դրա անբաժան ածանցյալ հայասպանդի քաղաքականությունը: Իսկ քանի որ ստատուս քվոն միջազգային քաղաքականություն է, ցանկացած ձևով նրա վերականգնումը արդեն վկայություն է արդի մեծ տերությունների միջև փոխադարձ համաձայնեցված թուրքակողմ դիրքորոշման և հայ ազգի դեմ նրանց նյութած նոր ցեղասպանական դավի մասին:

Այնինչ, ստատուս քվոյի քաղաքականությունը մեզանում անբավարար է լուսաբանված: Է՛լ ավելի անբավարար են բացահայտված հայասպանդի պատճառները, որոնք մեծ տերությունները թաքցնում են հատուկ գաղտնարաններում յոթ կողպեքի տակ: Հայասպանդի մասին քաղաքագիտական ընդհանրացնող աշխատություն առ այսօր հրապարակի վրա ընդհանրապես չկա: Տվյալ հոդվածը մի հատված է հենց այդ խնդրին վերաբերող մեր ուսումնասիրությունից:

***

Հայասպանդը վերջնական հետևանքն է եղել XVIII դարի վերջից օսմանյան կայսրության պահպանման համար եվրոպական տերությունների որդեգրած ստատուս քվոյի քաղաքականության, որն արտաքին սայրով ուղղված էր Ռուսաստանի դեպի հարավ առաջշարժման դեմ:

Բայց Ռուսաստանը դեպի հարավ էր շարժվում ամենից առաջ շնորհիվ այն հանգամանքի, որ թուրքերի հաստատած «տիպիկ ցեղային-բռնատիրական հիմքերի վրա» (49, էջ 177) հպատակներին կարիքի տակ խեղդելու (տե՛ս 3, էջ 85) «հին չինական կամ թուրքական» (4, էջ 339), այն է բացարձակ թալանչիական, ձրիակեր-պարազիտային, ռասայական-ջարդարարական պետական համակարգի դեմ հպատակ ժողովուրդների մղած ազգային-ազատագրական հարատև շարժումներն էին խարխլում թուրքական բռնապետությունը ներսից: Այդ շարժումների մշտական հարուցիչը թուրքական պետության բացարձակ կրոնառասայական իրավակարգն էր, որտեղ նույնիսկ ամենահետին թուրքը, իբրև իշխող ցեղի և կրոնի ներկայացուցիչ, այն աստիճանի արտոնյալ դիրքում էր ամենաարժանավոր այլազգիի նկատմամբ, որ պետականորեն արտոնված էր նրա գույքի, պատվի և անձի հետ վարվել ըստ իր քմահաճույքի՝ ընդհուպ մինչև հանուն զվարճության տանջելը և սպանելը: Դա թուրքական պետական դրվածքի տարրական սկզբունքն էր, որը խարսխվում էր թուրքերի դավանած մահմեդական կրոնի պատվիրանների վրա: Իսկ քրիստոնյան նույն թուրքական պետական դրվածքով համարվում էր մահմեդականի ստրուկը (ռայա) և բացարձակապես չուներ իրավունք պաշտպանվելու. նրա կողմից անհատ թուրքի ոտնձգության դեմ ինքնապաշտպանության ամենաչնչին դրսևորումն իսկ համարվում էր հանուր թրքության դեմ ուղղված հանցանք, որը պատժելու համար թուրքական պետությունը ոտքի էր հանում խուժանից սկսած մինչև զորքն ու սուլթանը: Իսկ թուրքերի դավանած մահմեդական կրոնը ոչ միայն մազաչափ իսկ չէր հակադրվում թուրքական սան-

---

*ԱԳՈՋՅԱՆ ԱՐՏԱՇԵՍ ԱՐՇԱԿԻ— Երևանի պետհամալսարանի ընդհանուր պատմության ամբիոնի դիսերտանտ:*

որ Հայաստանը որպես պետություն գոյություն չուներ՝ **մեծ տերությունների թշնամությունն** ուղղված չէր նրա դեմ որպես պետության, այլ **ուղղված էր հայ ժողովրդի դեմ ամենուր՝ որպես հայկական պետականության վերականգնման պոտենցիան կրողի, այսինքն՝ այդ թշնամությունը անտիարմենիզմ էր:** Նրա եյակետն ու վերջնակետը նույնն էին՝ հայակործանությունը: Դրա համար նյութել էին ռասայական հերյուրանքներ հայ ժողովրդի դեմ. նրա մեջ տեսնում էին միայն «խաբեբաների և գոփողների» առևտրականների դասին, որը կազմում էր ընդամենը միայն երկու տոկոսը հայության, և ոչ մի կերպ «չէին տեսնում» հայ ժողովրդի 80 տոկոսը կազմող աշխատավոր գյուղացիությանը և 15 տոկոսը կազմող արհեստավորությանը: Նման ստորությամբ ամբողջ հայ ժողովրդին մեղադրում էին այն արատի մեջ, որով ամբողջապես բռնված էին հենց մեծ տերություններն իրենք. նրանք իրենք իսկ ամեն ինչում, ի դեպ՝ նաև հայկական հարցում, ոտից գլուխ այնպիսի խաբեբա առևտրականներ էին (տե՛ս 22, էջ 23, 50, էջ 90), որ նույնիսկ ժողովուրդների շահագործումն ու թալանումը իրագործում էին վաճառականի և իրավաբանի կերպարանքով (տե՛ս 61, էջ 320): Իսկ Թուրքիայի կողմից հայ ժողովրդին ամենավայրագ բռնությամբ մշտապես կողոպտելը մեծ տերությունները «չէին տեսնում», քանի որ այդ թալանը համապատասխանում էր իրենց էությանը, ըստ այն դատողության, թե «գյուղացին նրա համար գոյություն ունի, որպեսզի նրան շահագործեն» (61, էջ 320):

Մեծ տերությունների անտիարմենիզմի մյուս պատճառն այն էր, որ երբ նրանք Հայաստանը գաղութացնելու էին ձգտում (տե՛ս 27, № 6), այդ նույն ժամանակ հայ ժողովուրդը քաղաքական ինքնուրույնության հարց էր դնում: Դա բավական էր, որպեսզի մեծ տերությունները մահացու թշնամի դառնային նրան, քանի որ **Մերձավոր արևելքի միջուկը հանդիսացող Հայաստանի այդ ձգտման մեջ նրանք դիտում էին ոչ միայն Թուրքիայի դեմ ընդվզում, այլև վտանգ հենց իրենց գաղութատիրության դեմ:** Հայաստանի քաղաքական ինքնուրույնությունը, նրա ստրատեգիական դիրքի ուժով, անխուսափելիորեն վարակիչ օրինակ կդառնար Ասիայի նախաշեմի վրա: Այդպիսով՝ գաղութատիրությունը Ասիայում պայմանավորված էր հայ ժողովրդի քաղաքական վիճակով: Ասիայի վրա գաղութային լուծը պահպանելու և ընդլայնելու համար մեծ տերությունները հայ ժողովրդին պետք է ոչ միայն պահեին թուրքական լծի տակ, այլև դատապարտեին ոչնչացման, լինելով այն ընդհանուր համոզմունքին, որ բազմահարյուր միլիոնավոր մահմեդական ժողովուրդներն անվտանգ են իրենց համար (տե՛ս 53, էջ 161, 176), իսկ խաչապաշտ մի քանի միլիոնանոց հայ ժողովուրդը «անհանգիստ է», «նրա երակներում հոսում է հատկապես անհանգիստ արյուն» (53, էջ 160, 176), և նա ծայրեծայր լցված լինելով ազգային հեղափոխական ընկերություններով՝ չի համակերպվում օտարազգի լծի հետ, ուստի անվստահելի և անօգտակար է որպես գաղութային ստրուկ (տե՛ս 53, էջ 158, 160—1, 176): Դրանից նույնպես բխում էր մեծ տերությունների միևնույն եզրակացությունը՝ Մերձավոր արևելքում ունենալ միայն մահմեդական ժողովուրդներ, իսկ հայերին՝ ոչնչացնել, որպեսզի գաղութային լուծը իրապես խորտակելու ունակ ժողովրդին աշխարհի այդ մասից վերացնեին: Դրա իրագործումը տերությունները մշակում էին սերտ համագործակցությամբ ու համաձայնությամբ (տե՛ս 53, էջ 107, 114, 125, 135): Նրանց արմենոցիդի ծրագիրը պարունակում էր հայ ժողովրդին նաև արմատապես գենային եղծման մատնելու հաշվարկ, այն է՝ եթե նրան ֆիզիկապես լրիվ ոչնչացնել չհաջողվեր էլ՝ նա պետք է հիմնովին մատնվեր թուրքերի բռնախառնակման, որպեսզի վերապրող հայությունը մտակարողությամբ դառնար անվտանգ Արևելքի վրա Արևմուտքի գերակայության դեմ: Դրա դրսևորումն է 1902 թ. գերմանական ծրագիրը՝ հայ ժողովրդին իր երկրից Միջագետք աքսորելու և Հայաստանը մահմեդականներով բնակեցնելու մասին (տե՛ս 65, էջ 391—392): 1910 թ. դրան հաջորդում է արմենոցիդի թուրքական ծրագիրը (տե՛ս 68, էջ 1—6): Այն լրացնում և ավելի է սրում գերմանական ծրագրի հայակործան սայրը: Դա մատնացույց է անում դրանք կազմելու գործում այդ տերությունների միջև նախնական կապի առկայությունը, որ հաստատվում է նրանց հետագա գործունեությամբ. հայասպանդի թուրքական ծրագիրը Գերմանիան կատարելագործում է 1912 թ.՝ նախ ռազմունակ հայերին թուրքական բանակ զորակոչելով ոչնչացնելու պլանով (տե՛ս 40, էջ 483): Ցարիզմը ձգտում էր Հայաստանում հայերի դերը իջեցնել զրոյի, այսինքն՝ ոչնչացնել նրան, իսկ Անգլիան մահվան համակենտրոնացման ճամբարներ կիրառելու օրինակ էր տալիս:

Այդպիսով՝ **մեծ տերությունների և Թուրքիայի հայասպան քաղաքականությունը կազմում էր մի ընդհանուր ամբողջություն: Նրանց կողմից ոչնչացման դատապարտված հայ ժողովուրդը անհավասար գոյամարտում պետք է հենվեր միայն սեփական ուժերի վրա:**




1. Ամֆիտեատրով Ա., *«Եվրոպա և Հայաստան», Թիֆլիս, 1906 թ.:*

2. Գեղամյանց Ն., *«Թուրքերը Կովկասում և Բաքվի անկումը», Բաքու, 1919 թ.:*

3. Լենին Վ. Ի., *«Ագրարային հարցը Ռուսաստանում XIX դարի վերջին», ԵԼԺ, հ. 17, Ե., 1978 թ.:*

4. Լենին Վ. Ի., *«Ժամանակակից կառավարության ագրարային քաղաքականության (ընդհանուր) հարցի շուրջը», ԵԼԺ, հ. 23, Երևան, 1979 թ.:*

5. Լենին Վ. Ի., *«Գրառում հաշտություն ստորագրելու անհրաժեշտության մասին», ԵԼԺ, հ. 35, Երևան, 1981 թ.:*

6. *«Լրաբեր» (թերթ), Լոս-Անջելես, 1958 թ.:*

7. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 229, ց. 2*

8. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 381, ց. 1*

9. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 383, ց. 29*

10. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 384, ց. 3*

11. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 391, ց. 3*

12. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 396, ց. 1*

13. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 396, ց. 2*

14. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 396, ց. 4*

15. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 396, ց. 5*

16. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 408, ց. 1:*

17. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 426, ց. 2*

18. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 1268, ց. 1*

19. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 1276, ց. 19*

20. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 1284, ց. 18*

21. *ԽՍՀՄ ՊԿՊԱ, ֆ. 1405, ց. 83*

22. Կիրակոսյան Ջ., *«Երիտթուրքերը պատմության դատաստանի առաջ», գ. I, Երևան, 1982 թ.*

23. Հիբբոնս Հ. Ադամս, *«Նորագույն պատմության ամենասև էջը. Վերջին կոտորածները Հայաստանում, Փաստեր և պատասխանատվություններ», Թիֆլիս, 1917 թ*

24. *«Հուշամատյան մեծ եղեռնի, Ֆոտոփաստաթղթեր, փաստաթղթեր, ականատեսների վկայություններ», Բեյրութ, 1965 թ.*

25 ՄԼԻ ՎՖ արխիվ, *ֆ. 12798, ց. 3*

26 Մորգենթաու Հ., *«Քսանվեց ամիս Թուրքիո մեջ, Կ. Պոլսի ամերիկյան դեսպանի հուշերը», Կ. Պոլիս, 1919 թ.*

27. *«Մշակ» (թերթ), Թիֆլիս, 1879 թ.*

28. *«Մուրճ» (գրական-գիտական հանդես), Թիֆլիս, 1906 թ.*

29. *«Նոր հորիզոն» (թերթ), Թիֆլիս, 1918 թ.*

30. Ջերազ Մինաս, *«Թե ինչ շահեցանք Բեռլինի վեհաժողովէն» Կ—Պոլիս, 1878 թ.:*

31. Ջերարդ, *«Չորս տարի Գերմանիայում, Բեռլինում 1913—17 թթ. ամերիկյան դեսպանի հուշերը», Կ—Պոլիս, 1919 թ.*

32. Ռաֆա ֆ., *ԱԳՄ Գրասենյակ, 1914 թ.*

33. Ռաֆա ֆ., *Քաղարխիվ, 1913 թ.*

34. Ռաֆա ֆ., *133—ԱԳՄ Գրասենյակ*

35 **Анучин Д. Г.**, «Берлинский конгресс» — «Русская старина» — Петербург, 1912 г., №№ 1—5.

36 **Бисмарк О.**, «Мысли и воспоминания», т. 2, М., 1940 г.

37 **Бисмарк О.**, «Мысли и воспоминания», т. 3, М., 1941 г.

38 **Бондаревский Г.**, «Багдадская дорога и проникновение германского империализма на Ближнем Востоке 1883—1903 г.г.». Ташкент, 1955 г.

39 **Волгин В. П.**, «Война и Ближний Восток» — «Летопись», 1916 г., № 4.

40 «Геноцид армян в Османской империи. Сборник документов», Ереван, 1966.

41 **Гирс А. А.**, «Россия и Ближний Восток», СПБ, 1906 г.

42 **Голобородько**, «Турция», М., 1914 г.

43 «Голос» (газ.), СПБ, 1876 г.

44 «Коран», М., 1963 г.

45 **Ллойд Джордж**, «Правда о мирных договорах», т. 2, М., 1957 г.
46 **Мандельштам**, «Младотурецкая держава». М., 1915 г.
47 **Маркс К.**, «Британская политика...» — К. Маркс и Ф. Энгельс. Соч., II изд., т. 9, М., 1957 г.
48 **Маркс К.**, «Секретная дипломатическая переписка» — К. Маркс и Ф. Энгельс. Соч., II изд., т. 10, М., 1958 г.
49 **Маркс К.**, «Хронологические выписки» — «Архив К. Маркса и Ф. Энгельса», т. 6, Ленинград, 1939 г.
50 **Никольсон Г.**, «Дипломатическое искусство». М., 1962 г.
51 **Пипия Г. В.**, «Политика Германии в Закавказье в 1918 г. Сборник документов». Тбилиси, 1971 г.
52 «Правительственный вестник». СПБ, 1878 г.
53 «Раздел Азиатской Турции по секретным документам бывшего министерства иностранных дел». М., 1924 г.
54 **Рорбах П.**, «Война и германская политика». М., 1915 г.
55 «Русский вестник» (газ.). СПБ, 1889 г.
56 **Силин А.**, «Экспансия Германии на Ближнем Востоке в конце XIX века». М., 1971 г.
57 **Соллогуб В. А.**, «Кавказ в Восточном вопросе». Тифлис, 1856 г.
58 **Хвостов В. В.**, «Ближневосточный кризис 1895—97 г.г.» — «Историк-марксист», т. 13, М., 1929 г.
59 **Энгельс Ф.**, «Письмо И. Атабекяну 23-го ноября 1894 г.» — К. Маркс и Ф. Энгельс. Соч., II изд., т. 39, М., 1966 г.
60 **Энгельс Ф.**, «Письмо Э. Бернштайну 22-го февраля 1882 г.» — «Архив К. Маркса и Ф. Энгельса», кн. I, М., 1924 г.
61 **Энгельс Ф.**, «Письмо Э. Бернштайну 9-го августа 1882 г.» — «Архив К. Маркса и Ф. Энгельса», кн. I, М., 1924 г.
62 **Энгельс Ф.**, «Турецкий вопрос» — К. Маркс и Ф. Энгельс. Соч., II изд., т. 9, М., 1957 г.
63 **Энгельс Ф.**, «Что будет с европейской Турцией» К. Маркс и Ф. Энгельс. Соч., II изд., т. 9, М., 1957 г.
64. "Die große Politik der Europeischen Kabinette 1871—1914. Sammlung der diplomatischer Akten des Außwärtigen Amtes", Bd. 9, Berlin 1923 J.
65. **Rohrbach Paul.** "Die Anatolische Bahn. Sonderabdruck aus den Preusischen Jahrbüchern", 110. Bd., 3, Heft, Berlin 1902 J.
66. **Sanders Liman, von.** "Fünf Jahre in Türkei", Berlin 1919 J.
67. **Seton Watson R. W.** "Disraeli, Gladstone and thr Eastern guestion", London 1935 J.
68. "The Turkish Tyranny...", Beyrut 1965.
69. **Schreiner Albert.** "Zur Geschichtlichte der Deutschen außen Politik 1871—1945", Berlin 1955 J.
70. **Werner E.** "Die Armeniergreuel 1915/16 ein armenisches Greulmärchen?"—"Zeitschrift für Geschichtswissenschaft" 21. Jahrgang, Heft 2, 1973 J.
71. "Die christliche Welt", Berlin 1898 J.



# ԲԵԼՈՌՈՒՍԻԱՆ ՆՐԱՆՑ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՐԵՆԻՔՆ Է

**Վ. ՊԱՎԼՈՎ**

ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆԸ ՆՇՈՒՄ է մեծ Հաղթանակի 45-ամյակը։ Խորհրդային ժողովուրդն այն թանկ գնով ձեռք բերեց։ Ագրեսորի չարագործությունն այնքան մեծ է, վերքն այնքան խոր, որ անցած ժամանակաշրջանը շատ փոքր է թվում։ Տակավին կյանքի ասպարեզից չի հեռացել պատերազմի ողջ ծանրությունը կրած սերունդը։ Այո՛, հարկ եղավ դառնության բաժակը մինչև հատակը քամել։ Բայց եթե պատերազմի տարիների սերունդն անցյալի ուղենիշները պահպանում է անձնական հիշողության մեջ, ապա համաժողովրդականը՝ ամփոփում է շատ սերունդների փորձը։ Նա հոգացողությամբ պահպանում է մեր պատմության լավագույն ավանդույթները։

Մեծ Հայրենականի դասերը շատ են։ Դրանցից մեկն ասում է՝ հաղթանակը ձեռք բերվեց այն պատճառով, որովհետև խորհրդային բոլոր մարդիկ կարողացան համախմբել իրենց ուժերը, դրսևորել անխորտակ միասնություն, բարեկամություն։ Այս դասն անանց նշանակություն ունի ներկա պայմաններում ԽՍՀՄ եղբայրական հանրապետությունների սերտ համագործակցության համար՝ ի շահ նրանց զարգացման ու բարգավաճման։ Դա հատկապես կարևորվում է հենց այսօր, երբ ոմանք չարաշահելով հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսների դժվարություններն ու բարդությունները, փորձում են սեպ խրել ժողովուրդների փոխհարաբերությունների միջև, զրպարտել բարեկամությունը և բարիդրացիությունը, սևացնել խորհրդային մարդու պատիվն ու արժանապատվությունը։

Բելոռուսական հողում թշնամու դեմ մարտնչել են հայ ժողովրդի բյուրավոր որդիներ ու դուստրեր։ Ահա սոսկ մի քանի ազգանուններ ու դրվագներ։ Մոգիլյովի մարզի ընդհատակում փայլուն դեր է կատարել կրտսեր լեյտենանտ Հենրիկ Ալեքսանի Ջաֆարյանը, որը մտնում էր «Անհնազանդներ» խմբի մեջ։ Ծնվել է Կիրովականում, համերաշխ ու աշխատասեր ընտանիքում։ Դեռևս միջնակարգ դպրոցում Հենրիկը հրապուրվում է ռադիոտեխնիկայով և ընկերների հետ երազում սխրանք կատարել հանուն խորհրդային հայրենիքի։ 1940 թվականի հուլիսին Հ. Ջաֆարյանը «Սոցիալիստական արշավ» շրջանային թերթում գրել է. «Ես ծնվել ու մեծացել եմ խորհրդային երկրի ջերմացնող արևի ճառագայթների ներքո։ Իմ նվիրական երազանքն է՝ դառնալ կարմիր բանակի զինվոր, պաշտպանել խորհրդային պետության սահմանները։

... Եվ երբ հայրենիքը պահանջի՝ մարտական ընկերներիս հետ թշնամու դեմ մարտի կմտնեմ։ Մենք չենք զցի խորհրդային երիտասարդության փառքը։

Մինչև արյանս վերջին կաթիլը, չխնայելով կյանքս, կպաշտպանեմ սիրելի հայրենիքս»։

Հենրիկ Ջաֆարյանն իր պատանեկան երդմանը հավատարիմ մնաց մինչև կյանքի վերջը։

1941 թվականի սկզբին Հ. Ջաֆարյանը շտաբի ռադիոհանգույցի հրամանատարն ու կինոմեխանիկն էր։ Նրա տանկային զորամասը գտնվում էր Մինսկի արվարձանում՝ Կարմիր բնավայրում։ Հենց այստեղ էլ նա դիմավորեց պատերազմը։ Մասնակցեց մեր երկիր ներխուժած ֆաշիստական զավթիչների դեմ կատաղի մարտերին, ընկերների հետ դիմակայեց թշնամու առաջին և ամենադժվար գրոհը։ Մոգիլյովի համար մղվող պաշտպանական մարտում, Սալտանովկայի մոտ (այն նույն տեղում կառուցված հուշարձանի մոտ, որտեղ 129 տարի առաջ երկրորդ ռուսական բանակը Բագրատիոնի հրամանատարությամբ հետ էր մղել Նապոլեոնի զորքերի գրոհները), հակատանկային մարտկոցի հրամանատար Հ. Ջաֆարյանը վիրավորվեց ու կոնտուզիայի ենթարկվեց։ Հոսպիտալում միայն չորրորդ օրն ուշքի եկավ։

Երբ օկուպանտները զավթեցին Մոգիլյովը՝ Հենրիկին հաջողվեց բժիշկների օգնությամբ դուրս պրծնել հոսպիտալից։ Նա երկար չմտորեց, չտատանվեց, գտավ իր ուղին, որը նրան բերեց ընդհատակյա–հայրենասերների շարքերը։ Գերմաներենին տիրապետելը և կեղծ փաստաթղթերը Ջաֆարյանին թույլ տվեցին հիտլերականների ռեզերվային ուժերի կազմավորման կայանին կից շտաբում մոնտյոր աշխատել։

---

*ՊԱՎԼՈՎ ՎԼԱԴԻՄԻՐ ՊԼԱՏՈՆՈՎԻՉ— պատմական գիտությունների թեկնածու, Մինսկի բարձրագույն կուսակցական դպրոցի դոցենտ։*

*մագրության կեղծիքները՝ հայդուկային շարժումը որպես ահաբեկչություն, իսկ հայդուկներին ահաբեկող-տեռորիստներ ներկայացնելը: «Թուրք քաղաքական գործիչներն ու պատմաբանները,— ասված է գրքում,— ցանկանում են խաբել համաշխարհային հասարակայնությանը, որ իբր նախկին տեռորիստները (կամ հայդուկները) ժամանակակից հայ տեռորիստների նման սպանում էին անմեղ թուրքերի, և դրա համար էլ օսմանյան կառավարությունը հարկադրված էր բռնի միջոցների դիմելու նրանց ու նրանց համախոհների նկատմամբ: Եվ հայերի կողմից թմբկահարվող «1915 թ. եղեռնը այլ բան չէր, եթե ոչ նման միջոցառումներից մեկը» (էջ 197):*

*Գրքում հանգամանորեն վերլուծված են Սասունի հայ գյուղացիների 1894 և 1904 թվականների գոյամարտերը (ոչ թե ապստամբություն, ինչպես նշում են որոշ պատմաբաններ) իրենց դեմ թուրքերի կազմակերպած 1895—1896 թթ. զանգվածային կոտորածներն ու արևմտահայության ինքնապաշտպանական կռիվները Զեյթունում և այլ վայրերում:*

*«Հայոց ցեղասպանության պատմության կեղծարարները». այսպես է վերնագրված գրքի երկրորդ մասը, որտեղ մերկացվում են թուրքական քաղաքագետների ու պրոպագանդիստների հակահայկական, հակառուսական հերյուրանքները: Թուրքիայում պետական քաղաքականություն է դարձել հայ ժողովրդի պատմությունը և մշակույթը կեղծ հայելու մեջ ներկայացնելը: Թուրք ցեղասպանները հայերին համարում են ոչ բնիկ ժողովուրդ: «Երբ հայերը եկան Անատոլիա (Հայկական բարձրավանդակ),— պնդում են նրանք,— այնտեղ վաղուց ի վեր ապրում և ստեղծագործում էին թուրքերի նախնիները» (էջ 309): 1982 թ. Թուրքիայում հրատարակված «Վանի պատմությունը և թուրք-քրդերի վերաբերյալ հետազոտությունները» գրքում կան հետևյալ բնույթի բազմաթիվ էջեր. «Մեզ համար աններելի է, որ երբեմն չմտածելով, իսկ ավելի հաճախ անտեղյակության ու տգիտության պատճառով, մենք այդ հիասքանչ վաղնջական հողերը էրմենիստան ենք անվանում: Հայերը յուրացնում են այդ հնամենի երկրի անունը, իսկ Արարատ սարը համարում են իրենց խորհրդանիշը... Հակառակ բոլոր պատմական փաստերի, էրմենիստան հասկացությունը, որպես հայերի հայրենիք, հակաթուրքական պրոպագանդայի ձևերից մեկն է» (էջ 311):*

*Պատմության թուրք կեղծարարները չեն խորշում հայտարարել, որ հայ գրերը ստեղծել են թուրքական ծագում ունեցողները:*

*Բազմաթիվ փաստերի հիման վրա այստեղ հանգամանորեն ցույց է տրվում թուրքերի կողմից հայկական ցեղասպանության նախապատրաստումն ու իրականացումը:*

*Գրքի վերջում հեղինակը բերում է աշխարհի առաջադեմ մարդկանց բազմաթիվ վկայություններ հայկական ցեղասպանության դատապարտման մասին՝ եզրափակելով այն «Պրավդայում» դեռևս 1918 թ. տպագրված խոսքերով. «Մեկ միլիոն հայեր, իրենց կանանց և երեխաների հետ սրի քաշվեցին միայն այն բանի համար, որ նրանք հայեր էին» (էջ 479):*

*Աշխատությունը շատ կշահեր, եթե նրանում թեկուզ համառոտակի տրվեին մեր ժողովրդի ազատագրական շարժումների լուսաբանման ասպարեզում հայ պատմագիտության վերջին տարիների նվաճումները: Կարծում ենք, որ նման ծավալուն աշխատությունը պետք է ունենար նաև ամփոփում ռուսերեն լեզվով: Ցավալի է, բայց փաստ, որ ռուս ընթերցողը ամբողջական պատկերացում չունի հայկական ցեղասպանության, Սումգայիթի ողբերգության, Լեռնային Ղարաբաղի վիճակի և արցախյան շարժման մասին: Այս հարցում մեր պատմագիտությունը դեռ շատ անելիքներ ունի:*

*«Գոյատևման պայքարի քառուղիներում» գիրքը հարստացնում է հայ պատմագիտությունը աղբյուրագիտական իր ընդգրկումներով, վերլուծությունների և եզրակացությունների գիտական ու քաղաքական հրատապությամբ:*

**Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
**ՀՍՍՀ ԳԱ իսկական անդամ**

*«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 4, 1990 թ.: Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն:*

*Հանձնվել է շարելու 14. 03. 1990 թ.: Ստորագրվել է տպագրելու 27. 04. 1990 թ.: ՎՖ 01368: Ֆորմատ 70×108 1/16: Թուղթ՝ տպագրական № 2: Օֆսեթ տպագրություն: 8,4 պայմանական տպագրական մամուլ: 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ: Տպաքանակը՝ 8482: Պատվեր՝ 250: Գինը՝ 25 կոպ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.